

# ՊԻՈՆԵՐ 6. 1979



1979 ԹՎԱԿԱՆԸ
ԵՐԵԽԱՆԵՐԻ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՏԱՐԻՆ Է



# ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ



ԳԵՎՈՐԳ ԽՈՇՈՐԴՅԱՆ, 10 տ., Երևան

## Ճնճղուկը

Ծլվլում է ուրախ մի ճնճղուկ,
Ինչ-որ մեկը հացի
փշուրներ է դրել նրա համար՝ քարին:

Արևոտ է օրը,
Մարդիկ՝ բարի,
Ա՜խ, թռչնակը փոքրիկ
Ո՜նց է ոգևորված ուզում երգել, թռչել...
Ինչ-որ տարօրինակ,
Թաքուն կապ կա կարծես
Այդ ճնճղուկի և իմ
սրտի միջև...

*ԱՐԱՐԱՏ ՄԱԼԽԱՍՅԱՆ*
*Ախալքալաքի շրջ., գ. Գումբուրդո,*
*10-րդ դաս.*



ՀԱԿՈԲ ՊԵՏՐՈՍՅԱՆ, 11 տ., Երևան

## ՄԱՅՐՈՒՂԻ

Այնտեղ, ուր շուտ է ելնում արևը
Եվ խորունկ քնից տայգան է զարթնում,
Կոմերիտական իմ քաջ եղբայրը
Ճամփա է հարթում:
Խորն է ճահիճը և ցուրտը՝ համառ,
Գործը դժվար է իմ եղբոր համար:
Բայց հազար-հազար քաջեր են գալիս,
Որ դեպի Ամուր գնան Բայկալից,
Բաց են դռները բանվորի առջև
Մեծ գործի համար, մեծ գաղափարի:

*ՍԱՇԱ ԲՐԻԳԻՆԵՑ, ՍՍՀՄ*



ՍՈԳԱՄ ՅՈՍԻԿՈ, 6 տ., Ճապոնիա

## Անձրևից հետո անտառում

Գոլորշի է արդեն դառնում
Ջուրը փոքրիկ լճակի,
Կուկուալ է սովորեցնում
Գորտ մայրիկը գորտ ձագին:
Չորացնում է թաց ականջը
Նապաստակը խոտերում,
Եվ հնչում է զվարթ կանչը.
— Կյանքն ուրա՜խ է աշխարհում:

*ՏԻՄԱ ԺԻՎՈՏՈՎՍԿԻ, ՍՍՀՄ*

ԳԵՈՐԳ ԲՐԱԳԻ ԷՅՆԱՐՍՈՆ,
6 տ., Իսլանդիա



## Աչքեր

Լինում են շեղ աչքեր,
Խոշոր ու նեղ աչքեր,
Եվ կլորիկ աչքեր,
Եվ սալորիկ աչքեր,
Սևուկ ու խաժ աչքեր,
Կապույտ ու պարզ աչքեր,
Խոսուն ու լուռ աչքեր,
Ավա՜ղ... և կույր աչքեր:

*ԼԻԶԱ ԳՐԻՆՎՈՒԴ,*
*11 տ., ԱՄՆ*

ՀՈՒՆԻՍԻ 1-Ը ԵՐԵԽԱՆԵՐԻ ՊԱՇՏՊԱՆՈՒԹՅԱՆ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՕՐՆ Է

# ԱՇԽԱՐՀԻ ԵՐԵԽԱՆԵՐԸ

## Գիշերապահը

Ես ֆաբրիկա եմ մտնում գիշերով,
Ձեռքիս լապտերը լույս է արձակում,
Ստուգում եմ ես դռները բոլոր,
Աշխարհն է քնած, լոկ ես եմ արթուն
Եվ շան հաչոց եմ լսում հեռավոր:
Ես ամեն գիշեր մնում եմ արթուն.
Հոգնել եմ արդեն ձխորից օրվա:
Մեքենաների աղմուկից փախչում,
Մտնում եմ խաղաղ գիրկը գիշերվա:

ԷԼԻԶԱՎԵՏ ԴՈՎԵՐ,
13 տ., Նոր Զելանդիա

## Թե կարողանամ

Թե կարողանամ աշխարհը փոխել,
Չար պատերազմը կմերժեմ իսկույն,
Գործարանները զենք չեն պատրաստի,
Իսկ զինվորները կաշխատեն դաշտում:
Եվ միլիոն-միլիոն երեխաները մայր ցամաքներում
Էլ չեն արտասվի քաղցից վշտահար,
Ես նրանց համար կտպագրեմ անվճար գրքեր,
Եվ հողագունդը կդառնա արդեն գեղեցիկ մի վայր:

ԿԱՐՈԼԻՆ ՄԱՐՏԻՆ,
12 տ., Ավստրալիա

## Ռուսական անտառ

Կանգնած են ինչպես զինվորներ զգաստ
Ձիգ սոսիները դիրքերում իրենց,
Կանաչ անտառում թևերով կանաչ
Փռվել է օրվա լռությունը մեծ:
Բայց խաբուսիկ է անդորրն անտառի,
Խոտը երգում է, առվակը երգում,
Եվ ընկերոջ պես ազնիվ ու բարի
Քեզ տեղ է տալիս անտառն իր գրկում:
Հյուրասիրում է մոշ ու հաղարջով,
Հովի ձեռքերով նա շոյում է քեզ,
Դու զգույշ քայլիր ծաղկունքի միջով,
Որ նրանց քնքուշ երգերը լսես:
Գեղեցիկ վայրեր ես շատ եմ տեսել,
Բայց իմ ռուսական անտառն եմ սիրում,
Ուր սոճիները որպես զինվորներ
Գեղեցկությունն են հսկում ու պահում:

ԷԼՅԱ ԿՈՐԿԻՆԱ, ՍՍՀՄ



ԷՐԻԿ ՇԱՎԲ,
7 տ., Իտալիա

## Ինչո՞ւ

Ինչու՞, դո՛ւ, մանկի՛կ, քաղցած ես նորից,
Ինչո՞ւ քո հայրը աշխատում է շատ
և քիչ ստանում,
Ինչու՞ դուք չունեք և՛ տուն, և՛ տանիք,
Ինչո՞ւ եք դո՛ւք միշտ փողոցում քնում:
Ինչու՞ աշխարհում կան պատերազմներ,
Ինչո՞ւ է հողը դառնում շարունակ
չոր ու անբերրի,
Ինչո՞ւ են տրված իմ ու քո սրտին
միայն երազներ,
Ինչո՞ւ վերջ չկա իմ ինչուներին:

ՀԻԼԴԵԲՀԱՐԴ ԹԵՋԻՆԳԵՐ,
15 տ., Ավստրալիա

Թարգմանությունները՝ ՆԱՆՍԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ
Գունավոր լուսանկարները՝
ԶԱՎԵՆ ՍԱՐԳՍՅԱՆԻ և ԱՎԵՏ ԽՍԱՅԱՆԻ





Ձյուն է գալիս
Մա՜նր, մա՜նր,
Նստում թևին
Թռչնիկի:

Իսկ թռչնիկը
Լուռ կծկվել,
Թառել է մերկ
Մի ճյուղի:

Մրսում է նա,
Մրսում է նա,
Ո՞վ օգնության
կհասնի...

ԼԵՌՆՈՒՀԻ ՎԱՐԴԱՆՅԱՆ,
Երևանի № 6 դպր.,
6-րդ դաս.



ՅՈՆԱ ԳԵՐՇԱՍՈՐ,
10 տ., ԱՄՆ

# Խաբարբզան Պավլիկը թաքուն հետաքրքիր նորություն է լսում



ԱՐԿԱԴԻ ԳԱՅԴԱՐ

Մոր բակ դուրս գալուց օգտվելով, Պավլիկն շտապով արճանակի կաթսայից դուրս քաշեց մսի մի մեծ, յուղոտ կտոր:

Հենց այդ ժամանակ գավթում ինչ-որ բան թխկաց: Մատներն այրելով, Պավլիկն շտապ միսը գրպանը խոթեց: Սակայն մայրը չէր երևում: Հավանորեն դռան հետևում խոպուկ Խռնչանն էր իրար անցել իր կերատաշտի մոտ:

Պավլիկը չարացավ Խռնչանի վրա, որի պատճառով հալված յուղով կեղտոտեց նոր շալվարի գրպանը: Ուզեց դուրս գալ և Խռնչանին մի քացի հասցնել, բայց այստեղ նրա բարկությունը շրջվեց իր կրտսեր, երկու տարեկան եղբոր՝ Գոշկայի դեմ:

Այդ խորամանկ, ուտելիքը երեսին քսմսած Գոշկան Պավլիկի ափսեից թոցրեց լոռաբլիթի կեսը և, խցկելով բերանը, սկսեց հանգիստ ծամել, ուռցնելով կարմիր, թթվաներից յուղոտված թշիկները:

Պավլիկը պարույթից ուզեց հասցնել Գոշկային և արդեն վեր կացավ աթոռից: Բայց խորամանկ Գոշկան, նկատելով այդ շարժումը, նախապես բերանը բաց արեց, պատրաստվելով ճղավել կոկորդ պատռող ուժով:

Պավլիկը վճիռը փոխեց: Նա տխրությամբ նայեց լոռաբլիթի մնացած կիսակտորին: Հառաչեց, անձնվատեհորեն բլիթի տակ մանանեխ քսեց և դիմամբ Գոշկայի աչքի առաջ վրան առատ շաքար ցանեց:

— Կե՛ր, Գո՛շենկա,— սրտաբաց առաջարկեց Պավլիկը:— Ես կշտացել եմ: Կե՛ր, անո՜ւշ լինի:

Առանց բերանը փակելու, խեթող, փոքրիկ, կլոր աչուկներով Գոշկան անվստահ նայեց Պավլիկին: Բայց ագահությունը հաղթեց պգուշավորությանը: Պատառն այնպես ախորժելի էր, և հետո Պավլիկի դեմքն է՛լ այնպես անկեղծ ու սիրալիր էր ժպտում:

Գոշկան պատառը խոթեց բերանը, և համարյա անմիջապես աչքերն արցունքով լցվեցին: Նա թքեց, լեզու ցույց տվեց Պավլիկին և դրանից հետո միայն խոր շունչ քաշեց ու սկսեց որոտաձայն լաց լինել:

Լաց լինելու վարպետ էր Գոշկան: Նա երբեք խռպոտելու աստիճան, խեղդվելով ու հազալով չէր բղավում, ինչպես շատ հիմար երեխաներ են անում: Գոշկան թոքերը լիքը օդ էր հավաքում և սկսում էր միապաղաղ ու թավաձայն.

— Ա-ա-ա-ա-ա-ա՜...

Հետո մի կարճ դադար էր առնում և նորից էր սկսում.

— Ա-ա-ա-ա-ա-ա՜...

Այսպիսով, իր ուժերը խնայողաբար ծախսելով, Գոշկան կարող էր շատ երկար ժամանակ ճղավել:

Նախապես ուրախանալով, որ մայրը վերադառնալով հավանորեն կքոթակի Գոշկային, երբ սա նրան իր ողնոցով համբերությունից հանի, Պավլիկը անձեղ-չքմեղ անկյուն քաշվեց և նստեց թախտին, պատրաստվելով դիտել հետաքրքիր դեպքերի հետագա ընթացքը: Բայց այդ պահին դուռը լայն բացվեց և մոր փոխարեն սենյակ մտավ քաղաքից անսպասելի վերադարձած հայրը:

Դա բոլորովին փոխում էր վիճակը: Հաստլիկ Գոշկան հոր սիրելին էր, այդ հիշելով, Պավլիկը շուռումուռ եկավ, նստարանից ցած թռավ, մոտեցավ բղավող եղբորը և արագ-արագ, անուշ- մեղուշ ձայնով ասաց.

— Լա՜վ, լա՜վ, հերի՛ք է, Գո՜շենկա: Լա՜վ, ի՞նչ է եղել... Ա՜յ, մեր սիրելի հայրիկն է եկել, էլ ի՞նչ ես բղավում: Մայրիկին ես կարոտե՞լ: Հիմա, հիմա մայրիկը կգա...

Բայց ո՛չ Գոշկային, ո՛չ էլ հայրիկին այդ խորամանկությունը չխաբեց: Գոշկան ավելի բարձր բղավեց, իսկ հայրը քաշեց Պավլիկի ականջը և կոշտ մատով տկտկացնելով տղայի գլխին, բարկացած հարցրեց.

— Դո՛ւ, դատարկագլուխ, պիտի հասկանա՞ս, որ չի կարելի երեխային նեղացնել:

Սակայն, քանի որ Գոշկան դեռ խոսել չէր կարողանում և Պավլիկի հանցագործության ոչ մի ապացույց չկար, նա հավանորեն կբավարարվեր միայն խրատներով: Բայց հայրը մեկ էլ ուշադրություն դարձրեց մեծ յուղոտ բծին, որ դուրս էր տվել տղայի ուռած գրպանից, և նրան քարշ տվեց դեպի լույսը:

Մի րոպե հետո վերադարձավ մայրը, և արգանակի մսի գողության մեջ բռնված, վշտացած Պավլիկը, ի մեծ ուրախություն Գոշկայի, որ արդեն դադարել էր բղավել, կաշեգոտով մի լավ ծեծ կերավ և ուղարկվեց խոհանոց. խիստ հրամայված էր մնալ այնտեղ և աչքի չերևալ մինչև երեկո:

Բարձրանալով տաք վառարանի վրա, Պավլիկը թաղիքի [illegible] դրեց գլխի տակ, ծածկվեց ոչխարենու հին կիսամուշտակով և, մի կուշտ լաց լինելուց հետո,

սակվեց, միտք անելով, թե ինչպես ավելի լավ կլինի վրեժ լուծել հորից և Գոշկայից: Հետո իր համար անմատչելի քնեց: Երազ տեսավ, իբր, ինքը՝ Պավլիկ Ալպիկինը, արդեն մեծ է և, իբր, իրեն Սեմյոն Սեմյոնովիչի փոխարեն ժողովրդական դատավոր են նշանակել: Եվ ահա իր մոտ են բերում Գոշկային:

— «Ա՛...— ասում է Պավլիկ-դատավորը:— Ուրեմն այդ դո՞ւք եք, քաղաքացի՛ Գոշկա: Շա-ա՜տ լավ: Իսկ հիշո՞ւմ եք ինչպես խժռեցիք իմ լոռաբլիթը: Իսկ հիշո՞ւմ եք, թե ինչպես ձեր պատճառով հայրս ինձ ծեծեց: Շատ-ա՜տ լավ, քաղաքացի՛ Գոշկա: Ձեզ դատապարտում եմ քառասուն տարվա տաժանակիր աշխատանքի... Աչքիցս հեռացրե՛ք, ընկե՛ր միլիցիոներներ, և չխնայեք այս անպետքին»: Հավանորեն բավականությունից Պավլիկը ձգվեց: Գլխի տակ դրված թաղիքե կոշիկը տեղից շարժվեց և դիպավ անկյունում չորացող ավելին, որը շրմփաց Պավլիկի դեմքին: Պավլիկը բարկացած փնչացրեց: Նա չէր ցանկանում արթնանալ և ուզում էր մինչև վերջ տեսնել երազը՝ արդարացիորեն դատապարտված Գոշկայի հետագա ձախորդություններով հանդերձ: Բայց հարևան սենյակից Պավլիկի ականջին հասավ ցածրաձայն խոսակցություն:

Պավլիկը հետաքրքրասեր չէր: Եվ առհասարակ նա հաստատ համոզված էր, որ ամենահետաքրքրական և կարևոր բաները լսել չի կարելի, այլ միայն գաղտագողի ականջ դնել: Ականջ դնել էլ պետք է կարողանալ: Ամենից առաջ պետք է քնած ձևանալ: Բայց դրա համար էլ համար ժամանակ է պետք: Օրինակ՝ ցերեկը սեղանի մոտ ոչ մի կերպ չես քնի. չես հավատա և դեռ կխանգարեն: Գիշերն էլ նրանով է անհարմար, որ կամ հայրիկն ու մայրիկն են քնած, կամ դու ինքդ ես իսկապես քնել ուզում: Կարելի է նաև թաքնվել, որ կարծեն, թե իբր գնացել ես: Միայն թե այդ ժամանակ փոշտալ բոլորովին չի կարելի: Ամառը հարմար է ականջ դնել բաստոնաի տակից: Բայց ձմեռը դա չի լինի, ցուրտ է:

Պավլիկը վառարանից կախ գցեց շինահեր գլուխը, ձեռքը խողովակաձև դրեց ականջին, և անմիջապես բարակ միջնորմի հետևից լսվող ձայներն ավելի հստակ ու որոշակի դարձան:

— Լավ, կրկնակոշիկներ. սա մեկ. կանի երկու ռուբլի քառասուն կոպեկ,— ասաց հայրը և հաշվիչի հատիկները չխկացրեց:— Գոշկային կոշիկներ. սա երկու: Դա էլ կանի հինգ ռուբլի:

— Պաշկային գլխարկ է հարկավոր,— հուշեց մայրը:

— Իսկ անցյալ տարվա՞նը: Ընչ՞ որ ամռանն ենք գնել:

— Փոքր է գլխին: Նրա գլուխը դդումի պես է մեծանում: Եվ չես հասկանում... Ուտում, ուտում է, բայց էլի նիհար է, ոնց որ եկեղեցու մոմ: Միայն գլուխն է աճում: Չգիտեմ, գուցե շա՜տ խելոք է դառնալու:

— Բանն էլ էն է, որ կարծես տխմար է,— սառնարյուն պատասխանեց հայրը և նորից համրիչի հատիկները չխկացրեց:— Լավ, սատանան նրա հետ, գլխարկ՝ երկու ռուբլի: Գումարը, մերի՛նս, ես ու դու տասնմեկ ռուբլի քառասուն կոպեկ հաշվեցինք: Էս էլ քեզ՝ պատիկ... Իսկ դու դեռ վարագույր էլ էիր ուզում:

Պատի հետևում հայրը հորանջեց, լուցկին չխկացրեց: Լսելի էր, թե ինչպես մայրը բաժակներն է կնգացնում, թեյ է պատրաստում:

Պավլիկը գոհունակությամբ քիթը վեր քաշեց և շուրթերը լպստեց: Հավանորեն ուրիշ անգամ հոր միրավորական դիտողությունը նրա սրտին կդիպչեր, բայց հիմա նա դրա վրա ուշադրություն չդարձրեց, որովհետև խոս-



տացած պսպղուն հովարով գլխարկը ճզմում էր մըտքերին:

— Ես, ա՛յ, Պաշկայի մասին եմ մտածում,— շարունակեց հայրը:— Շուտով շների հետևից վազելուն վերջ կտրվի: Քաղաքում, գործկոմում էսօր ուսուցչին հանդիպեցի: Նշանակում են մեկ մոտ հանգուցյալ Իվան Յակովլևիչի տեղը: Ինձ հարցնում է. «Հը՜, ո՞նց են ձեր երեխաները»: Ասում եմ. «Եթե խղճով ամենք, ապա մերոնցից վատը դժվար թե որևէ տեղ գտնես: Բոլորը խուլիգան են»: «Ոչինչ,— ասում է,— ինձ դրա համար էլ ինձ ձեզ մոտ են ուղարկում»:

— Ինչի՞ համար են էդպես անում,— հետաքրքրվեց մայրը:

— Ոչ մի բանի: Կարծում ես որպես պատի՞ժ: Բոլորովին էլ ոչ: Նա էդպիսի առանձնահատուկ ուսուցիչ է: Նա ինչ-որ տեղ առաջ խուլիգան-անապաստանների է ուսուցանել: Սրանց էնպես կսիշակի, որ ծպտուն չեն հանի: Այո՜...— շարունակեց հայրը, ձայնն իջեցնելով:— Նրան սենյակ հարկավոր կլինի: Ես հասկացրեցի, որ կարող է մեզ մոտ վարձել: Էնպես որ դու հիմա ուսուցչի մասին սուս արա, թե չէ վայ թե մի ուրիշն իրենն առաջարկի: Մեկ էլ տեսար տասը ռուբլին գրպանիցդ թռավ գնաց:

Դատի հետևում լռեցին: Ինքնաեռը թշշաց, և եռջուրը քչքչալով լցվեց թեյնիկի մեջ:

Որքան էլ որ ուրախացած լիներ Պավլիկը իր ենթադրվող գլխարկը գնելու կապակցությամբ, այնուամենայնիվ նոր ուսուցչի նշանակման մասին լսածի համեմատությամբ նրան մանր և անկարևոր թվաց:

Պավլիկը շրջվեց և կիսամուշտակը վրայից դեն նետեց: Նա շոգում էր: Բերանը բաց արեց և սկսեց արագ շնչել: Կարծես թե ինչ-որ կողմնակի մարդ ոտքերից բռնած նրան վառարանի վրայից ցած էր քաշում: Պավլիկն այլևս ոչ մի րոպե չէր կարող տեղում մնալ: Իմացած կարևոր նորությունը ապատ թռիչք էր պահանջում: Այն գիտակցությունը, որ միայն ինքն է՝ Պավլիկ Ալալիկինը, Խաբարբչյան մականունով, այդ նորությանը տեղյակ, հաճելիորեն հուզում և միաժամանակ տանջում էր նրան:

Հարկավոր է վազել և ամեն ինչ հաղորդել տղաներին: Հարկավոր է մանրամասն պատմել նրանց: Եթե մանրամասնությունները բավական չլինեն, կարելի է հորինել, ավելի ճիշտ՝ ոչ թե հորինել, այլ հորինելով լրացնել: Ինչպիսի՞ ուսուցիչ է: Ինչո՞ւ սովորական չէ, այլ առանձնահատուկ: Ե՞րբ կգա: Երիտասա՞րդ է, թե՞ ծեր:

Պավլիկը թաղիքները հագավ, վրան գցեց բամբակած, ներկված շինելից կարված վերարկուն, ճանկեց նապաստակի մորթուց մակը թափած գլխարկը և կամացուկ նախասենյակ ծլկեց:

Մարտյան տաք մթնաշաղը փափուկ խոնավությամբ լիզեց նրա դեմքը: Փողոց վազելով՝ Պավլիկը կանգ առավ, մտածելով, թե ո՞ւր ուղևորվի՝ դեպի բրուտագործների փողո՞ցը, թե՞ դեպի բլրակը: Մի քիչ տատանվելուց հետո շրջվեց դեպի առաջինը, որովհետև ավելի մոտիկ էր:

Պավլիկը ցատկոտելով վազում էր տրորված, փխրուն դարձած ճանապարհով: Եկեղեցու պատի մոտ չորս փոքրիկ երեխաներ ձնե մարդ էին շինում: Պավլիկին նկատելով, նրանք ճիչ ու ծիծաղով իրար ձեռք բռնեցին

# Ի Ն Ք Ն Ա Տ Ի Պ  Գ Ր Ա Դ Ա Ր Ա Ն,



*Ջոկատավար Օլյա Կալյանը հոկտեմբերիկներին պատմում է Գայդարի ստեղծագործությունների մասին*

Գեղեցիկ ու անկրկնելի է կանևյան հողը, որի անցյալն ու ներկան մեր բազմազգ երկրի պատմության ու մշակույթի փառապանծ էջերից են: Այստեղ, Մարտինովկա գյուղում է ծնվել Լեհական բանվորական կուսակցության հիմնադիր Լյուդվիգ Մարինսկին: Պրոխորովկա գյուղում եղել է մեծ կորավա՜ր Ալեքսանդր Սուվորովը, ապրել է Կիևի համալսարանի առաջին ռեկտոր Մաքսիմովիչը, որին այցելության են եկել Շևչենկոն ու Գոգոլը: Կանևում, Դնեպրյան բարձր դարափին է թաղված մեծ Կոբզարը՝ Տարաս Շևչենկոն: Կողքին, 1941 թվականի աշնանը Լեպլյավոյի մոտ ընկած մեր սիրելի գրողի՝ Արկադի Գայդարի գերեզմանն է:

Այստեղ՝ Կանևում պահպանվել է այն դպրոցը, ուր պատերազմից առաջ սովորել է կրասնոդոնյան ընդհատակի հերոս Օլեգ Կոշևոյը: Դպրոցի բակում նրա համեստ հուշարձանն է, շուրջը՝ ծաղիկներ:

Կանաչի մեջ թաղված քաղաքի կողքին Կանևյան ՀԷԿ-ն է: Հերոսական անցյալն ու հերոսական ներկան ապրում են կողք-կողքի: Եվ Դանկոյի հրավառ սիրտ ունեցող մարդկանց առաջ գլուխ խոնարհելու են գալիս հազար-հազարները՝ ահել թե ջահել, սեփական աչքերով տեսնելու այդ ճանապարհներն ու սրտին այնքան մոտ վայրերը: Գալիս են երկրի բոլոր ծայրերից: Աշխարհի բոլոր անկյուններից՝ հարյուր քսան երկրներից:

և, պարելով լրիվ չծեփված արձանի շուրջը, բարձր ձայնով սկսեցին երգել Պավլիկի համար տհաճ մի երգ.

Պավլիկը խաբարբզան,
Այծի նման մկկան:
Նա կատուներ է լափում,
Տղաներին միշտ խաբում:

— Ես հիմա ձեզ ցո՛ւյց կտամ,— սպառնաց Պավլիկը և կռացավ ձյուն վերցնելու:

Մանչուկները ճնճղուկների նման չաղ եկան, ցրվեցին: Պավլիկը նրանց բռունցք ցույց տվեց և առաջ գնաց, գոհ, որ ավանում կան նաև այնպիսի երեխաներ, որոնք իրենից վախենում են:

— Խաբարբզա՛ն,— հանգիստ ձայն տվեց Պավլիկին ինչ-որ մեկը:

Պավլիկը շրջվեց և եկեղեցու պատի տակ տեսավ Վոլոդկա Ռիբակովին: Պավլիկն ուղղվեց դեպի Վոլոդկան, բայց, երկու քայլ անելով, կանգ առավ, այժմ միայն գլխի ընկնելով, թե ինչ սխալ է թույլ տվել, ուղղվելով բռունցքագործների փողոցը, փոխանակ բլրակը գնալու:

Նորությունը որևէ մեկին շուտով հաղորդելու ցանկությամբ բռնված, նա բոլորովին մոռացել էր, որ անողոք Վոլոդկան առաջին խոկ հանդիպման ժամանակ անպայման իրեն կծեծի և կծեծի իրավացիորեն, որովհետև հենց վերջին օրերս Պավլիկը խաբարբզանություն էր արել և իր հորը՝ ավանի սովետի քարտուղարին հայտնել, որ անցյալ շաբաթ Վոլոդկան է նախագահի տան գերեզմանի հուշարձանի ապակին փորել հանել:

— Խաբարբզա՛ն, էստե՛ղ ես,— կրկնեց Վոլոդկան:— Եթե չմոտենաս, կհասնեմ, ավելի վատ կլինի:

— Ծեծելո՞ւ ես, Վոլո՛դկա,— քծնանքով ու խղճալի հետաքրքրվեց Պավլիկը:

— Ծեծելու եմ,— սառնությամբ պատասխանեց տղան և թքեց ձյան վրա:

— Հարկավոր չի, էլի,— ավելի խղճալի վնգստաց Պավլիկը:— Ո՞վ է քեզ ասում, որ կռվես: Տես, թե ոնց ուժեղն ես: Դու բոլոր տղաներից ուժեղն ես,խսկ ես՝ չէ:

Վերջին բառերը Պավլիկն ասաց թշնամուն շողոքորթելու և նրա մեծահոգության վրա ազդելու նուրբ հաշվով:

Բայց արդյունքը ճիշտ հակառակը եղավ: Թուխ, բարալիկ տղան չարությամբ ծիծաղեց և աչքերը կկոցելով բղավեց.

— Տես է՜, ի՜նչ խեղճ ու կրակ որբուկ է: Կռվելու համար փոքր է, խսկ խաբարբզանության համար՝ մեծ: Անմիջապես մո՛տ եկ... Կամ չէ. ծնկի՛ եկ և չորեքթաթ սողա՛ ինձ մոտ: Դե՛, մե՛կ... երկո՛ւ...

Մուգ մազերի փունջը դուրս էր թափվել Վոլոդկա Ռիբակովի ճմրթված գլխարկի տակից: Բարակ ճիպոտով տկտկացնելով իր մաշված կոշիկի քթին, նա իրանով թեթևակի առաջ հակվեց, և Պավլիկը հասկացավ, որ եթե մի վայրկյան էլ դանդաղի, դաժան ու անողոք ծեծ կուտի:

— Վոլո՛դկա,— վհատ ձայնով ողբաց Պավլիկը՝ շուրջը նայելով և պպզելով:— Գիտե՞ս ինչ եմ ասելու... Եթե հետս չկռվես, էնպիսի բան կասեմ քեզ, որ դեռ ոչ մի տղա չգիտի: Ես ինքս էլ հենց նոր իմացա: Էնպիսի հետաքրքիր մի բան, որ ում էլ ասես, թեկուզ Կոլկա Գորշկովին, ուղղակի կշշմի:

# ԱՐՏԱՍՈՎՈՐ ԹԱՆԳԱՐԱՆ

*Ու ոչ ոք անտարբեր չի անցնում Գայդարի անունը կրող արտասովոր թանգարանի, ինքնատիպ գրադարանի կողքով: Գրադարան-թանգարանը Գայդարի անմահ սխրանքի հավերժ կենդանի հուշարձանն է, զինվորի սխրանքի ու գրողի սխրանքի հուշարձանը:*

*Այն բացված է Ուկրաինայի ու ամբողջ երկրի պիոներների վաստակած միջոցներով: Երեխաներն իրենք են հավաքել թանգարանի շատ նմուշներ, իրենք են էքսկուրսիաներ անցկացնում, ընդունում հյուրերին՝ և՛ մեծերին, և՛ իրենց հասակակիցներին:*

*Գրադարան-թանգարանը երկար տարիներ գլխավորում է Գայդարի ստեղծագործությանը անսահմանորեն նվիրված, Թիմուրի համամիութենական շտաբի ակտիվ անդամ (մանկության տարիներին ինքն էլ թիմուրական) Վասիլի Աֆանասևիչ Բերյոզան:*

*Նրա ջանքերի շնորհիվ է գրադարանը հարստացել հայկագյուտ ցուցանմուշներով: Նա է առաջարկել անցկացնել «Գայդարի պայուսակը» օպերացիան՝ պիոներների կողմից որոնումը այն թաքստոցի, ուր պահված են գրող-մարտիկի վերջին ձեռագրերը:*

*Ավելի քան երեք հարյուր որոնող խմբեր են եղել Լեպլյավոյի մոտի պարտիզանական անտառում: Հարյուրավոր կիլոմետրեր են կտրել-անցել: Եվ նրանց հետ էլ Վ. Բերյոզան: Շատ խորանարդ մետր հող են փորել կարմիր հետախույզները: Եվ նրանց հետ էլ՝ Գայդարի գրադարան-թանգարանի դիրեկտորը: Ու չնայած որոնումներն առայժմ արդյունք չեն տվել, թանգարանը հարստացել է բազմաթիվ թանկարժեք ցուցանմուշներով՝ ժանգոտած սաղավարտներ, գնդացրային ժապավեններ, պարկուճներ...*

*Թանգարանի, նրա ստեղծման, հետաքրքիր որոնումների ու գտածոների մասին էլ Վասիլի Աֆանասևիչ Բերյոզան գրել է շատ հետաքրքիր ու անհրաժեշտ գիրք, որը շատ սովորական վերնագիր ունի. «Արկադի Գայդարի գրադարան-թանգարանը»:*

*Գայդարի կյանքից շատ հետաքրքիր և ուսուցանող փաստեր կիմանաք՝ կարդալով այդ գիրքը:*

Այս անգամ, ակնարկելով, որ Կոլկա Գորշկովը կարող է առաջինը իմանալ ինչ-որ շատ կարևոր բան, Պավլիկը շատ խորամանկ ու խելոք վարվեց:

Ռիբակովն ուղղվեց, շռկեց մի կողմ ծռված գլխարկը և արհամարհական ծամածռության տակ ջանալով թաքցնել իրեն հափշտակող հետաքրքրությունը, համաձայնեց.

— Դե լավ, ասա տեսնե՛նք: Է՜լ ինչ ես թաքուն լռել...

— Իսկ կարելի՞ է էլ չորեքթաթ չկանգնել,— վեհերոտ հարցրեց Պավլիկը:

— Կարելի է: Միայն եթե խաբում ես և շատ հետաքրքրական բան չէ, էդ դեպքում ուղղակի փորիդ ես պառկելու:

Բարձրանալով, Պավլիկը մի քանի անգամ տեղում ցատկեց, որ ընդարմացած ծնկները բացի, և սկսեց Ռիբակովին հաղորդել կարևոր թարմ նորությունները:

Նրա խոսելու ընթացքում Վոլոդկայի թուխ, սպիով հատված դեմքը աստիճանաբար ավելի և ավելի էր լրջանում, իսկ ձեռքի բարակ, ճկուն փայտը ավելի կտրուկ ու չարությամբ էր ծուռումուռ նախշեր գծում ձյան վրա:

— Ամուրի՞ է, թե՞ ամուսնացած,— կարճ հարցեր էր տալիս նա:

— Ամուրի... այսինքն՝ ամուսնացած է, բայց կինն ուրիշ քաղաքում է... աղջիկն՞ էլ է ուրիշ տեղ: Տղա էլ է ունեցել, բայց մեռել է,— եռանդագին հիշելով լրացնում էր Պավլիկը, վախենալով, թե շատ կարճ պատմությունը Վոլոդկային կարող է չբավարարել, և նա նորից կանգնեցնել կտա կոչելու իր որոշումը:

Երբ վախը բոլորովին հաղթահարած Պավլիկը խոսելն ավարտեց, Վոլոդկան նրա ուսին դրեց նիհար, բայց կառչուն ձեռքը: Պավլիկը դա ընդունեց հաղորդած նորության համար իբրև բարեկամության ու երախտագիտության նշան: Դրանից շոյված նա ուրախ քրքջաց և շնորհակալության պոռթկումից նրա մեջ ցանկություն առաջացավ իր պատմությունը լրացնել ուսուցչի տատի, նրա արտաքինի, նախկին աշխատավայրի վերաբերյալ նոր մանրամասնություններով, բայց հանկարծ զգաց, որ Վոլոդկայի նիհար մատները ավելի ու ավելի ամուր են սեղմում իր ուսը, և դա Պավլիկին դուր չեկավ:

— Եթե դու, խաբարբզա՛ն, որևէ մեկին ևս էդ մասին պատմես, ինձ համար էլ, նորի համար էլ ծեծ կուտես: Հասկացա՞ր:

Պատասխանի չսպասելով, Վոլոդկան Պավլիկին ցնցեց, հրեց ձյան կույտի մեջ, հետո սուլեց և թեթևորեն ցատկեց եկեղեցու պատի վրայով:

Համոզվելով, որ վտանգավոր կրուցակիցն անհետացավ, Պավլիկը ձնակույտից դուրս եկավ: Նապաստակի մորթուց գլխարկով վրայից թափ տվեց ձյան կոշտերը, նայեց շուրջը և, հավանորեն նմանեցնելով Վոլոդկայի խոսելաձևին, աչքերը կկոցեց, շրթունքների անկյունները իջեցրեց և, նայելով եկեղեցու պարսպի կողմը, որին նրա տեց սև ագռավը, արհամարհանքով բառերը ձգելով, ասաց.

— Երևա-ակայեցիր է՜լի: Էն է, քեզանից վախեցա՛...

Թարգմ. Վ. ԽՍԱՅԱՆԻ

Վերջերս թանգարանը հարստացավ մեր օրերի մի հայվագյուտ փաստաթղթով. գրողի որդին՝ Թիմուր Գայդարը, թանգարանին նվիրեց փոքր մոլորակներից մեկին Գայդարի անունը շնորհելու մասին վկայականը:

Համամիութենական «Պիոներ» ամսագիրը թանգարանին հանձնեց Ա. Գայդարի Պատվավոր դիպլոմը, որով պարգևատրվում են ամսագրում տպագրված տարվա լավագույն պատմվածքներն ու վիպակները:

Դու ևս, մեր բարեկամ-թիմուրական, կարող ես օգնել գրադարան-թանգարանին:

Հիմա այնտեղ ստեղծվել է «Թիմուրականների շարժման պատմությունն ու ներկան» բաժինը: Պատմի՛ր ձեր քաղաքի, գյուղի թիմուրականների աշխատանքի, առաջին թիմուրականների մասին, նրանց գործերն արտացոլող պատմվածքներ, լուսանկարներ ուղարկիր թանգարանին, ինչպես և պահպանվել են թիմուրականների գործերի մասին պատմող նյութերով պատերազմի տարիների թերթեր: Դրանցից ֆոտոպատճեններ հանիր և նույնպես ուղարկիր հետևյալ հասցեով.

Украинская ССР, Черкасская обл., г. Канев, Библиотека-музей А. Гайдара.

Մ. ՖՈՒՐԻՆ



Թանգարանի ցուցանմուշներից

ՓՈՔՐԵՐԻ ՀԱՄԱՐ

# Կատվիկը կամեցավ նկարիչ դառնալ

ԼԵՈՆԻԴ ԿԱՄԻՆՍԿԻ



Մի անգամ կատվիկը գնաց նկարչության ուսուցչի մոտ:

— Ես ուզում եմ նկարիչ դառնալ,— ասաց կատվիկը:

— Լավ,— ասաց ուսուցիչը,— իսկ գիտե՞ս դրա համար ինչ է պետք:

— Գիտեմ,— պատասխանեց կատվիկը,— պետք է ունենալ ներկեր, վրձին, երևակայություն և աշխատասիրություն: Այդ բոլորը ես ունեմ:

— Շատ լավ,— ասաց ուսուցիչը,— ե՛կ փորձենք: Իբրև սկիզբ՝ նկարիր փոքրիկ մոխրագույն մկնիկ:

Ուսուցիչը գնաց մոտեցավ ուրիշ աշակերտների, իսկ կատվիկը գործի անցավ:

Հինգ րոպե անց ուսուցիչը մոտեցավ կատվիկին.

— Գործերդ ինչպե՞ս են: Նկարեցի՞ր:

— Այո՛,— պատասխանեց կատվիկը և ուսուցչին մեկնեց թղթի մաքուր թերթը:

— Իսկ ո՞ւր է մկնիկը,— հարցրեց ուսուցիչը,— ես չեմ տեսնում:

— Ես կերա նրան,— մեղավոր ասաց կատվիկը:

— Լա՛վ: Որ այդպես է, ես քեզ խնդրում եմ նկարել մի բաժակ՝ մեջը լիքը կաթ:

— Լա՛վ,— ասաց կատվիկը,— այդ ինձ համար դատարկ բան է:

Ուսուցիչը դարձյալ որոշ ժամանակ անց մոտեցավ կատվիկին.

— Դե ցո՛ւյց տուր նկարածդ:

— Ահա,— ասաց կատվիկը և ուսուցչին մեկնեց էլի թղթի մաքուր թերթը:

— Հասկանում եմ: Կաթը, իհարկե, խմել ես, բայց ո՞ւր է բաժակը:

— Բաժակն էլ, չէ՞ որ թափանցիկ է, բոլորովին չի երևում:

— Այդպե՞ս... Դե այժմ քեզ տալիս եմ երրորդ առաջադրանքը. նկարի՛ր, խնդրեմ, շուն, շինկավոռն...— ավելացրեց ուսուցիչն ու հեռացավ կատվիկից:

— Վե՛րջ, ավարտեցի՛,— բացականչեց կատվիկն այնպես բարձր, որ ուսուցիչը շրջվեց նրա կողմը:

— Ցո՛ւյց տուր տեսնեմ,— ուսուցիչը վերցրեց նկարն ու կարմրացած մոտեցրեց աչքերին: Այս անգամ թղթի մաքուր թերթի վրա պատկերված էր մի շագանակագույն մեծ կետ,— ա՞յս է շունը:

— Այո՛,— ասաց կատվիկը,— սկզբում ես պատկերացրի մի մեծ շիկահեր շուն: Նա այնքան մեծ էր և սարսափելի, որ ես վախից բարձրացա ծառի ամենաբարձր կատարը: Այնտեղից՝ ծառի կատարից շունը ինձ երևաց բոլորովին փոքրի՛կ-փոքրիկ, կետի մեծության: Այդպես էլ ես նրան պատկերել եմ:

— Ահա թե ի՛նչ,— ասաց նկարչության ուսուցիչը,— դու ունես երևակայություն, բայց աշխատասիրություն առանձնապես չնկատեցի: Խնդրեմ, դարձյալ համեցեք...





Նկ. ԱՆՈՒՇ ՏԵՐ-ՄԻՆԱՍՅԱՆԻ

# ԶՐՈՒՅՑՆԵՐ ԼԵԶՎԻ ՄԱՍԻՆ

ԼԵՎՈՆ ՀԱԽՎԵՐԴՅԱՆ
*Բանասիրության դոկտոր*

## 14. ԼԱՎ ՎԵՐԱԲԵՐՄՈՒՆՔ ԲԱՐԲԱՌԻ ՆԿԱՏՄԱՄԲ

Լոռեցիներն ընկույզին պոպոք են ասում, զանգեզուրցիները՝ ճողոպուր: Կարելի՞ է կամ պե՞տք է, որ այդ բառերը մուծվեն գրական հայերենի մեջ: Ո՛չ կարելի է, ո՛չ էլ պետք է: Ինչո՞ւ: Թեկուզև այն պատճառով, որ դրանցից մեկը հասկանալի է միայն Լոռիում, մյուսը՝ միայն Զանգեզուրում: Ուրեմն, դրանք անելիք չունեն համաժողովրդական գրական հայերենում:

Այդպես էլ շատ ու շատ ուրիշ բարբառային բառեր ու դարձվածքներ, որ հասկանալի են միայն իրենց ծննդավայրում, տեղ չեն գտնում գրական լեզվում:

Բայց կան շատ և շատ ուրիշ բարբառային բառեր ու դարձվածքներ, որ առոք-փառոք տեղ են գտել գրական հայերենում նույնիսկ այն դեպքում, երբ ունեն իրենց գրական համարժեքները: Ինչո՞ւ. որովհետև նաև մատչելի են ամենքին և ապա՝ ունեն նրանգային տարբերություններ:

Համոզվենք օրինակներով:

Բանաստեղծ Համո Սահյանն իր գրքերից մեկը կոչել է «Իրիկնահաց»: Իր ոտանավորներից մեկում նա գրել է. «Օրը մթնեց, ժամն է արդեն իրիկնահացի»: Իրիկնահաց-ն այլ բան չէ, քան ընթրիք-ը, բայց բարբառային բառը տեղ է գտել իր գրական համարժեքի կողքին, որովհետև ունի մի երանգ, մի այնպիսի հարազատություն ժողովրդական կենցաղին, որից ընթրիք-ը զուրկ է: Հիշածս տողի մեջ բավական է իրիկնահաց բառը փոխարինել ընթրիք բառով, որ տարբերությունը զգացվի: Փոխարինված բառը խորթ կհնչի այնպես, ինչպես եթե «Զմեռվա իրիկունը» (Պուշկինի հայտնի բանաստեղծության վերնագիրը Հովհ. Թումանյանի թարգմանությամբ) ասելու փոխարեն, ասենք «Զմեռվա երեկոն»:

Ո՞ւմ մտքով կանցնի, որ մի ժամանակ գրական ռուսերենին անհարիր են համարվել այնպիսի բառեր, ինչպիսիք են *удача, вполне, жадный, дельно* և այլն: Չկարծեք, թե այդ բառերը հեշտությամբ են ժողովրդական խոսվածքից գրական լեզվին անցնել: Անհավատալի է, բայց և փաստ, որ երբ լույս է տեսել Պուշկինի «Ռուսլան և Լյուդմիլա» պոեմը՝ ժողովրդական բառերով ու դարձվածքներով հագեցած մի գործ, եղան լեզվագետներ, որ հարձակվեցին բանաստեղծի վրա՝ «Կարելի՞ է այդպես աղավաղել ռուսաց լեզուն»: Եվ Պուշկինը ստիպված է եղել պաշտպանվել իր անկոչ քննադատներից:

Նույն բախտն է վիճակվել և Հովհաննես Թումանյանին, նա ևս շատ ջանք է թափել «մաքուր գրական լեզվի» անխոհեմ պաշտպաններին իրենց տեղը նստեցնելու համար: Երբ նրանք բանը հասցրել են ծայրահեղության, ասելով, թե ջան բառն օտար է ու մերժելի, բանաստեղծն այսպես է պատասխանել. «... այսուհետև փոխանակ ախպեր ջան կամ Գրիգոր ջան ասելու, մաքուր հայերենով կասենք հոգյակ եղբայր կամ հոգյակ Գրիգոր, կամ թե չէ քեֆ անելիս, նեռողություն, մաքուր հայերենով ասենք, խրախճանք անելիս կամ առհասարակ ուրախանալիս փոխանակ «ջա՜ն» բացականչելու, կկանչենք «հոգյա՜կ»...

Եվ մի՞թե դուք չեք տեսնում ու չեք զգում, թե ինչքան է սա անմիտ ու անճաշակ: Մի՞թե չեք տեսնում, որ հոնքը շինելու տեղ աչքն էլ հանում եք»:

Այսպես է պատասխանել բանաստեղծը՝ վստահ, որ լեզվին «ազգային դրոշմ ու հիմք տալու համար պետք է հիմնվել կենդանի լեզվի, նրա ոգու ու օրենքների վրա»:

Այսպես՝ պարզ, հստակ, անհերքելի, ինչպես ամեն ինչ, որ դուրս է եկել Թումանյանի գրչի տակից: Թե որքան էր իրավացի բանաստեղծը նաև այս դեպքում, կարելի է ցույց տալ բազմաթիվ օրինակներով:

Զննենք դրանցից մեկը. ժողովրդական կամ բարբառային մի դարձվածք՝ «ձեռ առնել» (երբեմն սխալմամբ գրում կամ ասում են «ձեռք առնել». պետք չէ գրականացնել ժողովրդական դարձվածքը, մանավանդ որ «ձեռք առնել»-ն ուրիշ իմաստ ունի՝ կարելի է միջոցներ «ձեռք առնել»):

«Ձեռ առնել»-ն իդիոմ է. լեզվաբանության մեջ այդպես կոչվում են այն դարձվածքները, որոնք հատուկ են միայն տվյալ լեզվին, դրանց իմաստը չի բխում բառերի բուն իմաստին, ուստի և բառացի թարգմանության չեն ենթարկվում, ինչպես, ասենք, «աչքդ լույս» դարձվածքը: Բայց դա առանձին զրույցի նյութ է:

Գրական լեզվում ունե՞նք «ձեռ առնելու» համարժեքը: Ունենք, ինչո՞ւ չէ: Հոմանիշների բառարանում կան՝ ծաղրել, հեգնել, ծանակել, ծաղր ու ծանակի ենթարկել և այլն: Մի՞թե նույնը չեն: Կարծես թե՝ այո: Բայց ինչո՞ւ մենք կենդանի խոսքի մեջ գերադասում ենք ասել ժողովրդական ակունքից եկածը՝ «Ո՞ւմ ես ձեռ առնում, ի՞նձ», «Ձեռ առնողիս տես», «Գնա ձեր

հավերին ձեռ առ», «Մեկը լինի քեզ ձեռ առնի», կամ ինչո՞ւ Ե. Չարենցը հենց հեղինակային խոսքում կարող էր գրել «Հյուսները... աշխատանքի ընթացքում ձեռ էին առնում իրար»:

Պատճառն այն է, որ ժողովրդական դարձվածքն ավելի վառ է, կենդանի ու տպավորիչ, քան իր եղբայրակիցները գրական լեզվում: Ուրիշ բան, որ հեգնանք-ն էլ իր տեղն ունի (կասենք՝ հեգնական վերաբերմունք), տեղ-էլ կա, ուր ծանակել-ն է ուժեղ հնչում (կասենք՝ ամբոխը ծանակում էր) և այլն:

Հիմա տեսնենք ձեռք-ի հետ կապված ինչքան վառ ու կենդանի արտահայտություններ ունի հայերենը, որոնք, ինչպես հարադիր բայերն առհասարակ, բխում են բարբառներից, ժողովրդական ակունքներից: Ուշադի՛ր եղեք. բարձրաձայն կարդալով ակա՛նջ դրեք, թե դրանք երանգային ինչ տարբերություններ ունեն իրենց գրական համարժեքների համեմատ.

ձեռը դատարկ —չունևոր, դատարկաձեռն
ձեռը պակաս — անզոր
ձեռը բաց — առատաձեռն
ձեռը փակ — ժլատ
ձեռք բերել — հայթայթել
ձեռք բռնել — օգնել
ձեռք բարձրացնել — սպառնալ
ձեռ քաշել — հրաժարվել
ձեռքերը լվանալ — հրաժարվել, մի կողմ քաշվել
ձեռքը դեմ անել — մուրալ
ձեռուոտ ընկնել — շուտափույթ ամեն միջոցի դիմել
ձեռքերը ծոցին — խեղճ, անօգնական
ձեռքն արնոտ — մարդասպան
ձեռքերը ծալել — պարապ նստել
ձեռքին նայել — մեկից օգնություն հայցել
ձեռքից գալ — կարող լինել

Հավանորեն նկատեցիք, որ զուգահեռների այս շարքում (դա կարելի էր ավելի մեծացնել) առաջինները ոչ պակաս, գուցե և ավելի վառ են, ավելի տպավորիչ, քան երկրորդները: Եթե այդպես է իրոք, ապա ինչո՞ւ մենք առաջիններն ավելի քիչ ու անհամարձակ ենք գործի դնում, քան երկրորդները: Պատճառն ա՞յն է միայն, որ մենք ծուլանում ենք սովորել ու իմանալ հոմանիշ բառերը, թե՞, նաև այն, որ դրանք բարբառային ենք համարում ու ձեռ քաշում դրանցից՝ անխղճորեն աղքատացնելով, վառ ու կենդանի գույներից զրկելով մեր լեզուն:

Կարծում եմ՝ և՛ մեկը, և՛ մյուսը:

Տխո՛ւր երևույթ:

Եթե նույնիսկ ժամանակին այդ արտահայտությունները եղել են բարբառների կամ ժողովրդական խոսվածքի սեփականությունը, ապա վաղուց ի վեր դրանք մտել են մեր գրական լեզվի մեջ, տեղ են գրավել ժամանակակից հայոց լեզվի բոլոր բառարաններում: Այնքան էլ լավ չեն խոսում այն մարդկանց մասին, որոնք գերադասում են կիսաքաղց մնալ, միայն թե իրենց գանձը սնդուկում փակված մնա: Մենք էլ, երբ նույն վերաբերմունքն ենք ունենում բառարաններում ամբարված մեր լեզվական հարստության հանդեպ, այդպիսի մարդկանց չե՞նք նմանվում:

Դա իր կարգին: Բայց նույնպիսի անփութությամբ մենք կորցնում ենք առօրյա կյանքում եղած սովորական բառերն անգամ: Գրական լեզվի հանդեպ այնքան նրբանկատ գրող Ստեփան Զորյանը գործ է ածել մոռ և մոռուտ բառերը, այնքան հասկանալի ամեն մի հայ մարդու: Մոռ ասելիս, կարծես, նրա համն ու բուրմունքն էլ զգում ես: Այս տարի ես զարմանքով նկատեցի, որ Դիլիջանում, մոռի ամենալավ տեղը, մոռին մալինա են ասում: Ինչո՞ւ, իրենք էլ չգիտեն: Ուզում են քաղաքավարի՞ խոսել, մոռ-ից անհարմար են զգում, ի՞նչ է: Այսպես որ գնա՝ մոշ-ն ու մոշուտ-ն էլ կվերանա, և այսպես ուրիշ, իբրև թե բարբառային բառեր:

«Այն գրողը, որ չունի ֆոլկլորի իմացություն, վատ գրող է: Ժողովրդական ստեղծագործության մեջ անբավ հարստություն է թաքնված, և բարեխիղճ գրողը պետք է տիրապետի դրան»,— Մաքսիմ Գորկու այս խրատը վերաբերում է ոչ միայն գրողներին, այլև նրանց, ովքեր ուզում են լավ իմանալ մայրենի լեզուն: Իսկ գրողը ժողովրդական ստեղծագործությունը պետք է լավ իմանա գրական լեզուն նրանով հարստացնելու համար: Իսկ ի՞նչ է բարբառը, եթե ոչ ժողովրդի ստեղծագործությունը լեզվի ասպարեզում:

Բայց բարբառը պետք է սիրել ու գուրգուրել ոչ միայն այն պատճառով, որ նա գրական լեզվի հզոր ակունքներից մեկն է: Բարբառը հրապուրիչ է հենց իբրև ժողովրդական ստեղծագործություն: Ամեն բարբառ ունի իր գույնը, հրապույրը, իր երաժշտությունը: Ես, որ ղարաբաղցի չեմ, հաճույքով եմ լսում Ղարաբաղի բարբառը, որ ինձ գրավում է ուրույն երաժշտությամբ, իբրև մեղեդի: Հապա ինչքա՛ն գեղեցիկ է թիֆլիսահայ բարբառի մեղեդին, այն էլ Գաբրիել Սունդուկյանի վերարտադրությամբ, չխոսելով այլևս Սայաթ-Նովայի մասին: Վեր ածեք նրանց գրվածքները գրական լեզվի՝ և տեսնեք, թե կորուստներն ինչքա՛ն շատ կլինեն:

Ամեն բարբառ մի մեղեդի է հայոց լեզվի վիթխարի համանվագում:

Իհարկե, հաղորդակցության այսօրվա պայմաններում, գրական լեզվի, համաժողովրդական՝ հայերենի այսօրվա տիրապետության ընթացքում բարբառները և նրանց տարբերությունները հետզհետե վերանում են: Բայց իսպառ վերանալ չեն կարող: Եվ դրա մեջ ոչ մի վատ բան էլ չկա, եթե միայն բարբառները ոչ թե խանգարեն համաժողովրդական լեզվի բյուրեղացմանը, այլ հարստացնեն, համ ու հոտ տան նրան: Իսկ դա մեզանից է կախված, մեր ճաշակից ու հմտությունից:

Ուրեմն, եկեք եզրակացնենք՝ բարբառները մեր լեզվի հարստությունն են, ուստի և պետք է լավ վերաբերվել նրանց՝ առանց, սակայն, թույլ տալու, որ նրանք հախուռն ու անկոչ միջամտություններով խաթարեն գրական հայերենը:

Իսկ ինչպե՞ս վարվել էս ու էն-ի, էսպես ու էնպես-ի, հա ու չէ-ի և նման բառերի հետ, երբ ունենք դրանց «մաքուր գրական» համարժեքները: Այդ մասին՝ հաջորդ անգամ:

# Հեքիաթ Կարմիր
# և մյուսն

ՄԱՆՈՒԿ ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ


ատիկը վերցրեց անկողնու մոտ, փոքրիկ սեղանին դրված ռադիոաքրքը, ձգեց երկարացրեց անտենան և խռպոտ ձայնով ասաց.

— Կ—144, Կ—144, լսո՞ւմ ես...

— Լսո՞ւմ եմ, մայրի՛կ, լսո՞ւմ եմ...

— Ի՞նչ եք անում:

— Թեյ ենք խմում:

—Ա՜խ, եթե այդ թեյից ինձ մոտ էլ լիներ...— Տատիկի խոսքը կիսատ մնաց: Նա երկու անգամ փռշտաց:

— Հիվա՞նդ ես...

— Մի քիչ տկար եմ...

— Մենա՞կ ես, տանը մարդ չկա՞...

— Բոլորն էլ տանն են...

— Պառկա՞ծ ես...

— Պառկած եմ ու դող եմ զգում...

—Տեղիցդ վեր չկենաս,— անհանգստացավ Կ—144-ը, — և պետք է անպայման հոնի մուրաբայով թեյ խմես...

— Այսօր ոչինչ պետք չէ,— հանգստացրեց Տատիկը:— Վաղը զաթա՛ թխիր, մեծ թերմոսի մեջ թե՛յ լցրու և բեր ի՜նձ: Քո եփած թեյը շատ եմ սիրում:

— Լավ,— ասաց Կ—144–ը,— ես ամեն ինչ կպատրաստեմ, կտամ Կարմիր գլխարկին, նա առավոտյան կբերի:

— Շատ լավ կլինի,— ուրախացավ Տատիկը:— Նրան վաղուց չեմ տեսել, կարոտել եմ:

Առավոտյան մայրիկը Կարմիր գլխարկին տվեց պայուսակն ու ասաց.

— Տար Տատիկի՛ն: Ոտքով կգնաս: Տրանսպորտով կանգառից մինչև Տատիկի տուն 1131 մետր է, ոտքով 1118: Մայթով գնում ես, անցնում անտառը, շարունակում ես 327 մետր և Տատիկի տունը առջևդ է:

— Բան մի՛ սովորեցրու,— ասաց Կարմիր գլխարկը ու պայուսակը վերցնելով դուրս եկավ:

Նրա անունն, իհարկե, Կարմիր գլխարկ չէր: Նրան բոլորը Կարմիր գլխարկ էին ասում, որովհետև կարմիր գլխարկ էր դնում: Իսկ եթե ճիշտն ասենք՝ միայն գլխարկը չէր, որ կարմիր էր, կարմիր էին և՛ մուշտակը, և՛ տաբատը, և՛ կոշիկները, և՛ բոլորը՝ սինթետիկ, որակի նշանով: Նա վեց տարեկան էր, ուր որ է ավարտելու էր մանկապարտեզի վերջին խումբը, և շատ էր զարմանալի, որ մայրիկը նրան փորձում էր բացատրել, ինչպես գնալ տատիկի տուն: Ի՞նչ արած՝ մայրիկը մնում է մայրիկ... Իսկ Կարմիր գլխարկը Տատիկի տուն գնալու ավելի կարճ ճանապարհ գիտեր. նա ոչ թե մայթով գնաց, այլ գնաց ուղիղ, որտեղ սառույց տեսավ, թափ առավ, սահեց ու քիչ անց հայտնվեց անտառում: Անտառը մեծ էր, բաղկացած 23 ծառից: Այնտեղ ձյունը շատ էր ու տրորված չէր, դրա համար էլ Կարմիր գլխարկը որոշեց, որ վատ չի լինի, եթե մի մեծ ձնագնդի սարքի ու նոր գնա Տատիկի տուն:

Դեռ չէր հասցրել պայուսակը վայր դնել, երբ մի հրաշալի կենդանի հայտնվեց նրա դիմաց: Այդպիսի կենդանի նա նույնիսկ գազանանոցում չէր տեսել:

— Դու ո՞վ ես,—զարմացավ Կարմիր գլխարկը:





# …գլխարկի, տատիկի …րի մասին

Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ



— Գայլն եմ:

— Գայլն ի՞նչ է, շո՞ւն... Շան նման ես...

— Շուն,— քմծիծաղ տվեց գայլը:— Ես շների նախապապն եմ:— Գայլը երևի մրսում էր ու դրանից փշաքաղվել էր:— Էս ո՞ւր ես գնում:

— Տատիկիս մոտ: Հիվանդ է, ես նրան գաթա ու թեյ եմ տանում:

— Գաթան ո՞ւր է...

— Պայուսակի մեջ,— ձեռքը պայուսակին շրխկացրեց Կարմիր գլխարկը:

— Ասում ես՝ Տատիկդ հիվա՞նդ է...

— Մի անգամ ասելով՝ չե՞ս հասկանում,— զայրացավ Կարմիր գլխարկը...

— Հո վարակիչ չի՞...

— Հարբուխ ունի: Եթե գրիպ լիներ՝ մայրիկս ինձ նրա մոտ չէր ուղարկի:

— Երևի շատ է նիհար Տատիկդ...

— Նիհա՞ր,— ծիծաղեց Կարմիր գլխարկը:— Վեց փութ է:

— Վեց փութն ինչքա՞ն է...

— 96 կիլոգրամ:

— Հետաքրքիր է,— ուրախացավ գայլը:

— Ոչ մի հետաքրքիր բան չկա,— ասաց Կարմիր գլխարկը:— Ավելորդ քաշը ազդում է սրտի աշխատանքի վրա: Ճնշումը բարձրացնում է: Հիպերտոնիա...

— Իսկ նա որտե՞ղ է ապրում...

— Անտառից դուրս ես գալիս, անցնում 327 մետր՝ նրանց շենքն է: Երրորդ շքամուտքի վերելակով բարձրանում ես 19-րդ հարկ, աջ թևի վրա առաջին դուռն է:

— Մենա՞կ է ապրում...— Գայլի աչքերը հուզմունքից խոշորացան:

— Հիմա մենակ է,— Կարմիր գլխարկը կռացավ, սեղմեց, կլորացրեց ձյունը:— Ամեն մեկը գնացել է իր գործին, խեղճի հույսը ես եմ մնացել:

— Հետաքրքի՜ր է,— գոչեց գայլն ու իրեն անտառից դուրս նետեց:




Կարմիր գլխարկը ձնագնդին գլորեց փափուկ ձյան վրայով ու հանկարծ գայլի արարքը նրան կասկածելի թվաց: Նա շտապ բացեց պայուսակը, թղթով փաթաթված ու դեռ տաք կարկանդակի ու թերմոսի արանքից դուրս բերեց ռադիոսարքն ու արագ-արագ ասաց.

— Ժ—116, Ժ—116, լսո՞ւմ ես...

— Լսում եմ,— ասաց Տատիկը:— Էս ո՞ւր ես, քեզ եմ սպասում...

— Անտառում,— ասաց Կարմիր գլխարկը:— Հիմա շատ կարևոր մի բան պատահեց,— ու նա Տատիկին մանրամասն պատմեց կատարվածը:

— Կմնաս այդտեղ,— հրամայեց Տատիկը,— մինչև չկանչեմ՝ չգաս:

— Ձմեռ պապի կսարքեմ:

— Սարքի՛ր,— ասաց Տատիկը և շտապ վերցրեց լսափողը:— Լսո՞ւմ եք. մեր միկրոշրջանում գայլ է հայտնվել և ենթադրում եմ, որ գալիս է ուղիղ ինձ մոտ:

— Ի՞նչ բան է գայլը,— հարցրին:

— Ես ձեզ ինչպես բացատրեմ,— նեղվեց Տատիկը:— Գիշատիչ է...

— Գիշատիչն ի՞նչ է...

— Բաց արեք Սովետական մեծ հանրագիտարանը, կարդացե՛ք,— պայթեց տատիկը:— Ի՞նչ եք ժամանակ կորցնում:

— Սպասե՛ք,— կարգադրեցին ու քիչ անց ասացին.— Պարզ է: Միջոցներ ենք ձեռք առնում: Դռան զանգին՝ դուռը չբացեք:

Քիչ անց երկնքում հայտնվեց ուղղաթիռը:

— Կենտրո՛ն, կենտրո՛ն,— ասաց ուղղաթիռի վարորդը,— տեսնում եմ: Հետապնդվող օբյեկտը խախտել է երթևեկության կանոնները, փողոցն է անցնում: Մեքենաների հսկայական խցանում է գոյացել:

— Շարունակե՛ք հետևել,— հրամայեցին կենտրոնից:

Գայլը մեքենաների արանքից մի կերպ դուրս պրծավ ու շարժվեց դեպի դիմացի շենքը:

— Կենտրո՛ն,— ասաց ուղղաթիռի վարորդը,— օբյեկտը փողոցն անցնում է, գնում է դեպի 21 շենքը: Հուզված է, հոգեկան վիճակը անհավասարակշիռ է:

— Կարո՞ղ եք կրակել:

— Ո՛չ, երեխաները սառույցի վրա սահում են, վտանգավոր է:

— Շարունակե՛ք հետևել:

— Լսում եմ:

Գայլը շրջանցեց խաղացող երեխաներին, մոտեցավ շենքին և շարժվեց ուղիղ դեպի երրորդ շքամուտքն ու ներս մտավ:

— Կենտրո՛ն,— ասաց ուղղաթիռի վարորդը:— Օբյեկտը երրորդ շքամուտք մտավ: Տեսանելիությունս զրո է:

— Կարող եք վերադառնալ օդանավակայան,— պատասխանեց կենտրոնն ու կապվեց վերելակների կառավարման վարչության հետ:— Անհապաղ միացնել 21 շենքի երրորդ շքամուտքի վերելակի հեռուստատեսային խցիկը...

— Լսո՛ւմ ենք,— ասացին ու միացրեցին:

Եվ կենտրոնում հեռուստացույցի էկրանին երևաց գայլը: Նա հևալով շոյում էր սովից ներս ընկած փորը ու անընդհատ լիզում շուրթերը: Վերելակը բարձրանում էր վայրկյանում տաս մետր արագությամբ: Ահա նա անցավ յոթերորդ հարկը, ութերորդը, իններորդը...

— Լսո՞ւմ եք,— ասացին կենտրոնից,— տասնհինգերորդ հարկից սկսած՝ վերելակ բաց թողնել քլոր գազ՝ տասներկու խորանարդ մետր ծավալով:

— Լսո՛ւմ ենք,— ասացին, և երբ վերելակը հասավ տասնհինգերորդ հարկին, սկսեց լցվել քլոր գազով:

Կենտրոնում տեսան, թե ինչպես գայլը սկսեց փռշտալ, հետո ջղաձգվեց մարմինն ու թրմփալով ընկավ հատակին:

— Օպերացիան ավարտված է,— ասացին կենտրոնից:— Վերելակը ցած իջեցնել: Սանէպիդկայանին՝ դո՛ւրս հանել օբյեկտի մարմինը և վերելակը ախտահանել:

Կենտրոնից տեսան, թե ինչպես սահեց վերելակը և հանգստացած շունչ քաշելով զանգահարեցին Տատիկին:

— Օբյեկտը վնասազերծված է: Կարող եք չանհանգստանալ: Առողջություն ենք ցանկանում:

— Կարմի՛ր գլխարկ, Կարմի՛ր գլխարկ,— ռադիոսարքը վերցնելով կանչեց Տատիկը: Լսո՞ւմ ես...

— Լսում եմ,— ասաց Կարմիր գլխարկը:— Հիմա Ձմեռ պապիկ եմ սարքել:

— Կարող ես գալ: Գայլը վնասազերծված է:

Երբ Կարմիր գլխարկը մոտեցավ շենքին, տեսավ, թե ինչպես հակագազեր հագած չորս հոգի աքցաններով քարշ տվեցին գայլի մարմինն ու գցեցին մեքենայի մեջ:



Այս հեքիաթը կարող էր այսպես էլ ավարտվել: Բայց այդ նույն օրը, երբ տատիկները բացեցին ընտիր հեքիաթների գիրքը և ցանկացան իրենց թոռնիկների համար կարդալ «Կարմիր գլխարկը» հեքիաթը, զարմանքից մի պահ մնացին քարացած: Գայլը հեքիաթից անհետացել էր, իսկ առանց գայլի ի՞նչ հեքիաթ...





«Գյուղը» — ՎԱՐԴԱՆ ՀԱԿՈԲՅԱՆ
Լենինականի գեղարվեստի դպրոց, 4-րդ դաս.

Լուսանկարը՝ ԶԱՎԵՆ ՍԱՐԳՍՅԱՆԻ

# ՄԻ՞ԹԵ ՀՈՂԻՆ ԿԱՐՈՏՈՒՄ ԵՆ

*ԼՈՒՍԻԿ ԲԱՌՆԱԿՅԱՆ*

Վարդանուշ տատիկը եկած օրվանից հաշվում է օրերը, շաբաթները, ամիսները:

— Երեք ամիս է արդեն այստեղ եմ,— մեղմիկ ժպտալով ասում է նա:

— Մայրի՛կ, ամեն տարի, երբ գալիս ես, ինձ թվում է, այլես գյուղ վերադառնալու մասին չես մտածի,— ասում եմ ես:

— Բալա՛ս, թռչունն իր բույնն է փնտրում հազար-հազար կիլոմետրեր հեռանալուց ու վերադառնալուց հետո, մարդն էլ իր տունն է փնտրում:

— Մի՞թե մեր տունը չի կարող քոնը լինել:

— Կարող է, բայց ես այդքան ուժ չունեմ:

— Ինչի՞ համար, մայրի՛կ:

— Որպեսզի կարողանամ ինձ համոզել, ընտելացնել...

— Ինձ թվում է, որ դու այստեղ ավելի լավ ես զգում: Բոլորս սիրում ենք քեզ:

— Ես էլ ձեզ եմ սիրում, բայց այսպես ձեռքերս ծալած նստել չեմ կարող:

Իսկ երեխաները դեռ տատի որոշման մասին չգիտեն, կարծում են, թե նա դեռ մնալու է, գուցե և ընդմիշտ:

Ամեն անգամ, երբ նա գյուղ է վերադառնում, Անին հիվանդանում է: Նա այնպե՜ս է կապվում տատին, այնքա՜ն է սիրում նրան:

Տատը գյուղում մենակ է ապրում: Տունը լի է անբացատրելի ու ձգող ուժերով: Վերնատանը նա դեռ պահում էր մեր կանաչ օրորոցը: Իր հինգ երեխաներին նա այդ օրորոցի մեջ է մեծացրել: Պատից կախված է մեծ որդու լուսանկարը: Նա Հայրենականի պատերազմում է կռվել... Հայրս էլ չկա...

Որքան հեռանում են մարդիկ, այնքան կարծես մոտենում են: Կորցնում են իրար ու ձգտում գտնել կրկին:

Գարունը միանգամից եկավ:

Երևում են մեր գյուղից հեռո՜ւ հեռո՜ւ փռված սարերը:

— Տա՛տ, դու ուզում ես գյո՛ւղ վերադառնալ,— հարցնում է Անին:

— Ուզում եմ, Անի՛:

— Դասերը որ չլինեին, ես էլ կգայի...

— Երբ դասերը վերջանան, կգաք, ես կսպասեմ:

— Էլի օրերը կհաշվե՞ս:

— Կհաշվեմ:

— Այստեղ ես գալիս, օրերն ես հաշվում, գնում ես գյուղ, որ էլի օրե՞րը հաշվես...

— Հաշվելու եմ ու անհամբեր սպասելու եմ ձեզ:

— Մնա, դասերը վերջանան, միասին գնանք:

— Չեմ կարող:

— Ինչո՞ւ:

— Գարուն է:

— Որ գարուն է ի՞նչ:

— Կարոտել եմ հողին, մեր այգուն, հողը կանչում է...

Անին էլ ոչինչ չի ասում, հիմա Անին շատ բան է հասկանում: Իսկ Պատրիկը, որ իր համար խաղում էր, թողնում է խաղալիքները, մոտենում է տատին ու նետվում նրա գիրկը.

— Ես չե՛մ թողնի, որ գնաս:

Տատը Պատրիկին սեղմում է կրծքին:

— Գնամ ծաղիկներ ցանեմ, որ Անին ու Պատրիկը գան ջրեն:

— Ցնցուղո՞վ:

— Ցնցուղով:

— Է՞լ ինչ անես, տա՛տ:

— Դեղին-մեղին համի ճուտիկներ ունենամ, որ Անին ու Պատրիկը գան տեսնեն:

— Է՞լ ինչ անես, տա՛տ:

— Խնձորի ծառերը ջրեմ, որ թոռնիկներս կարմիր-կարմիր խնձորներ քաղեն...

Հաջորդ օրը ճաշին Վարդանուշ տատիկին ճանապարհ դրեցինք:

Ետ վերադառնալիս Պատրիկը հարցրեց.

— Ինչո՞ւ գնաց տատիկը:

— Չգիտե՞ս,— ասաց Անին,— կարոտել էր հողին...

— Հողի՞ն,— կարմրացավ Պատրիկը, ապա դարձավ ինձ.— Մա՛, հողին կարոտո՞ւմ են:

— Կարոտում են, Պատրի՛կ, կարոտում են,— ասացի ես:

ՀՐԱՉՅԱ ՄԱԹԵՎՈՍՅԱՆ

# Երազում ձի

Մոսկորի սարերի աչքերը բյուրեղ աղբյուրներն են: Գիշերները հովվակրակները տաք են պահում երկինքը: Պեծպեծում են աստղերը, մեղրածոր տալիս ու կաթկթում սարերի վրա, աղբյուրների մեջ, խառնվում կրակներին:

Ավերված Մոսկոր քաղաքի առասպելները մտել են հաճարենիների ու կաղնիների կեղևների տակ, ծաղկում են լորենիների հետ, սպրսուռ մասրենու թփերի միջից կախվում անցորդների փեշերից, փոփոխ ջրերի գիրկն ընկած՝ գնում են խեղդվելու հեռու ծովերում:

Սարոն ու Մոսին եղբայրներ են: Էլի եղբայրներ ունեն՝ Գուրգենը, Գառնիկը: Քույր ունեն՝ Անուշը: Էլի եղբայրներ ունեն՝ սարի բոլոր երեխաները: Կայծակ ձին չգիտի, թե ինչպես է հայտնվում նրանց մոտ: Ցանկացած պահին ձին հայտնվում է նրանց տակ: Կայծակ ձին նրանց մեծացնում է, միամտության, պարկության, քաջության ափքներ խփում նրանց դեմքին, թաքուն հերոսության բոլոր հրճվանքները պարգևում: Նրանք մի օրվա մեջ մեծանում են, մեծ մարդ դառնում իրիկնամուտին, բայց մյուս առավոտ արթնանում են որպես երեխա ու՝ հո՛պ, երեխա կտրած թռչում են ձիու շալակը: Կայծակ ձին նրանց համար դարձել է կանաչ դաշտ: Պառկում են ձիու մեջքին, գլուխկոնծի տալիս, օձապտույտ տալիս ձիու փորի տակով ու ձեռքերի վրա կանգնում ձիու գավակին: Մի կանաչկարմիր հագած վարդավառ օր, նրանք իրենց Անուշ քրոջը կինոյի շորեր հագցրին, նստեցրին ձիուն, իսկ իրենք իրենց արվեստը ցուցադրեցին: «Օյի՜ն են, օյի՜ն, երեխանե՞ր հո չեն, տեղներն խմանան, կգան կտանեն կինոյի մեջ կգցեն»,— պարմանքով ասում էին հովիվները: Սարի երեխաները շատացան, դարձան ութ եղբայր, բոլորն ունեն կինոյի շորեր հագած մի Անուշ քույր:

— Ա՛յ Սանդրո,— հովիվ ընկերոջը ձեն է տալիս Արտաշը,— էն մեր Հովհաննես Թումանյանի Սարոյի, Մոսու և Անուշի օր ու կյանքը տես, քո երեխանց կյանքը տես:

— Հա՛, քեմատար, բա կյանքն էլ դրա մեջ է,— չփփացնում է Սանդրոն:

Ով հասնում ու նստում է Կայծակ ձիուն, սա թռած գնում է, կայծակ կտրած թռած գնում է, ոտը գետնին չի առնում, բայց երեխաներին հենց տեսնում է, ուրախությունից մարմնով մի անուշ դող է անցնում: Ձին Մոսկորի սարերում, Սոթի, Սարաղբյուրի սարերում էնքան սիրուն տեղեր գիտի ու իր մեջքին մոռւններին նման վազվզող երեխաներին աչքերը փակ տանում է: Տանում նրանց աստղահովիտ աղբյուրների ջրերում է մկրտում, տանում նրանց թոցնում է երազանքների միջով, անցկացնում ծիածանների տակով ու երկնասայուն կաղնիների շառաչների շունչը շնչել տալիս նրանց:

— Ա՛յ կինոյի ձի է, սրանք կինո գցելու երեխաներ են...

Խոսքը գնաց ո՜ւմ ականջն ընկավ: Մեկ օր էլ եկան, երեխաներին շոյեցին, սիրեցին, դեսից-դենից հարցեր տվին, ձիու բնավորությունը խմացան, խրտնո՞ղ է, թե՞ ոչ, քացի տվո՞ղ է, թե՞ ոչ, հո անտեղի չի՞ խրխնջում... Էսպես ոտքիկ-խորամանկ հարցուփորձեցին, ուրախացան, որ երեխաները ապրում են սարերի անդորրության մեջ, որ հիմա աշխարհում խաղաղություն է, որ թող երեխաները ուրիշ ձիերով ու խաղալիք ձիերով յոլա գնան: Մի տարի հետո ձին առոք-փառոք ետ կգա: Իրենց էլ կտանեին ձիու հետ, բայց դա հետո, մի խաղաղ կինո ստեղծելու ժամանակ: Կամ կգան հենց այս սարերում, ինչպես իրենք կան, այդպես էլ կինո կգցեն:

Ձիու սանձը նրանց ձեռքն անցավ, ձիու շունչը տաքացնում էր նրանց ծոծրակը: Ձին կանգնած է նույն տեղում, սանձը՝ նրանց ձեռքին, շունչը՝ ծոծրակներին, աչքերի լույսը՝ անհայտ տեղեր: Նա աչքերի մեջ առավ երեխաներին, սարերը, ճամփաները, պինդ փակեց աչքերը: Ապա ձիավարի գգվեց երեխաներին, առաջին ձախ ոտքը բարձրացրեց:

— Տանում են կինո գցելու,— անցավ բերնից բերան...

...Ուղիղ մի տարի հետո նույն մարդիկ ձին բերեցին ու հանձնեցին Սարոյին ու Մոսուն: Եվ Սարոն ու Մոսին փորձում էին ձիուց խմանալ բաներ, որ իրենք չգիտեին, իսկ ձին գիտեր...

Ձին եկավ-չեկավ, երեխաները թառեցին նրա կողերին, մեջքին, կրպան պոչից: Տեսան՝ հո փորքաշը թո՞ւլ չի: Վերցրին թամբը. հո մեջքը վե՞րք չի եղել: Նայեցին աչքերին. հո չե՞ն խամացել իրենց աշխարհից: Այստ սարերում տրտինգ տվող Կայծակ ձին տեսել էր մի ուրիշ աշխարհ: Հավանել էր թե չէր հավանել, հայտնի չէր անում, պարզ էր մի բան. ձին ուրախացավ, որ նո-

# ՄՏՐՈՒԿ

ՄԱՔՍԻՄ ՈՍԿԱՆՅԱՆ

Պայծառ արևը թաքնվեց կրկին,
Ու մոմերի պես ստվերները հանգան:
Դու ո՞ւր ես գնում, փոքրի՛կ մտրուկ իմ,
Ճառով չես գտնի տունդարձի ճամփան:

Մութն է գայլի պես քայլում քո հետքով,
Տես, ծառերն էլ են ինչ-որ տեղ քնում,
Ինչ սա՞ր է, սակայն ծերուկ երեկոն
Սև վերարկուն է դողալով հագնում:

Է՜հ, կակաչնե՞րն են դաշտում գեղեցիկ,
Էլ ի՞նչ գեղեցիկ, երբ չեն երևում,
Քո մեծ աշխարհը թվում է նեղլիկ,
Սիրտդ էլ բռնված թռչուն է թվում:

Դու ո՞ւր ես գնում, փոքրի՛կ մտրուկ իմ,
Մութ է, չես գտնի տունդարձի ճամփան:
— Գնամ արևին գտնեմ, որ կրկին
Աշխարհը լինի գեղեցիկ ու լայն:

# Նստելը մուրազ է...

րոց սարերում է, իր երեխաների հետ:

Երեխաների հայ ու քեֆով գնացող ձին հիմա էնքա՞ն բան գիտեր, բայց, ո՞նց պատմեր: Թող նորից թառեն իր վրա, ինչպես կուպեն՝ նստեն, կժերը կախեն կողերից ու գնան Թուրշիաղբյուրից ջուր բերելու, մայրամուտին բարձրանան ամենաբարձր սարն ու իրեն խրխնջալ տան լեռներով փակվող արևի վրա: Թող սարերի պատմությունը գնա ու գարնան նման տարածվի աշխարհի վրա:



Զարմանալի մի սիրտ է տրոփում լեռներում, պապերի սրերից ու կարոտներից բարձրացած բլուրներում: Զարմանալի մի սեր է բուրում սարերում ուրցի, ղաղձի բույրին խառնըված: Մանկության հեքիաթի գորգըն է հյուսվում հազար կանչերից, ծպիտներից:

Լեռնալանջի անտառից դուրս եկավ ձին ու ետևում թողեց հանդիպած վիլիսին: Սարի օդով թոքերը բացած ձիու հետ մեքենա՞ կմրցի... Ձին անցավ, իսկ ձիու մեջքին պինդ կպած եղբայրները ոտներով շրջվեցին ու թափահարեցին ձեռքները: Ապա կանգնեցին ձիու մեջքին, տարածեցին թևերը, կքեցին մեկ ոտքի վրա, իրար ոտ ու ձեռ բռնած գալարվեցին ձիու չորս բոլորքով ու նորից կպան-դարձան ձիու մազ, թե տեսեք, իբր վախենում ենք ընկնելուց:

Կինոյի դոռոց, պենք ու կրակի շաչյուններ լսած ու տեսած ձին գնում էր իր երանության հետ: Հանկարծ երեխաները նստեցին դեմ-դիմաց, ձեռքերն առան հաց ու պանիր, սկսեցին անուշ անել: Մոսին ձիու բաշից բռնեց ու նրան մի կտոր շաքար տալով, դարձավ վիլիսում նստածներին.

— Համեցեք հացի:

— Իսկ նստելու տե՞ղ:

— Ուր հոգով ենք նստում: Սա հո մեքենա չի՛, որ տեղ չլինի: Ձիու շարունակությունը սարերն են, մեր տունը: Գնացեք մեր վրանը: Մենք հիմա կգանք: Գնում ենք հայրիկի մոտից գառ բերելու:

Ու, չսպասելով խոսքի, սլացան:

Երեխաները, սարերի բախտավոր երեխաները, որոնք նախանձում են աշխարհի տեսած, դերասաններ ու դերասանուհիներ, շատ ժողովուրդ տեսած իրենց ձիուն:

Վրանի դուռը կովի կաշի է փռված: Արջը ձորում խեղդել է կովին, աղմուկի վրա տղերքը հասել են, փախցրել արջին:

Երբ տղերքը եկան, գառը ձիու վրա առաջները դրած, նայեցին արևի տակ աղ ուտելով չորացող կաշվին: Մոսին թե.

— Որ խիղճներս կորցնեինք՝ արջի մորթին էլ կբերեինք՝ կփըռեինք էստեղ, բայց, դե, ամոթ է: Անտառն առանց արջի ի՞նչ անտառ:

— Ձիու վրա էդպես աջ ու ձախ, ոնց ասեք նստում եք: Բա չեք վախենո՞ւմ:

— Մեր Կայծակը չի սիրում վախկոտներին: Նկարահանվել է հերոսական կինոյում: Բայց ինչ անում ենք չենք անում, չի պատմում, թե ինչ տեսավ կինոյում: Ո՞վ է նստել իր մեջքին, իրենից լավ ձի կա՞ր, թե ոչ: Միայն գիտենք, որ շաքար ուտել է սովորել:

Քիչ հետո հարայ է ընկնում: Գայլերի ոհմակ է երևացել: Նրանք մըտրակում են ձին ու ձգվում դեպի մըշուշները, կանչող ձայները:

Սարոյի, Մոսու, Անուշի, էլի երկու տղաների մայրը մոտենում է մածնի տոպրակին:

— Թողնես ձմեռն էլ սարերում կմնան: Բայց, ոչինչ, դասերը լավ են սովորում,— ասում է մայրը՝ ինքնիրեն, թաքուն դռան արանքից նայելով թանձր մշուշներին:

Մութ է: Սարերին նստած լռությունը ջնկջնկան հովերից ու ձիերի սառը խրխինջներից քսվում է լեռան կողերին ու ընկնում ձորերի բերանը և ձորերի ճնշից նորից կպչում սարերին:

Մոտկորի սարերը այնքան հպարտ ու բարձր են, խաղաղ ու լաջվարդ երկնքին հպված, որ թվում է օրհներգության ու արարումի նախաստեղծ խոսքն այստեղ է ասվել ու վարար աղբյուրների ձայներով տարածվել աշխարհում: Անգամ ցփցփան անձրևների, կայծակների կտրտված որոտների ու տկտկան կարկուտների տակ սարերը մարդու նման չեն խոժոռվում ու չեն կորցնում իրենց բարությունը: Մեծերը բարի են լինում, որքան մեծ՝ այնքան բարի:



Երկուսով մի այծենակաճի մեջ շուլալված, թիկունքները հովվակրակին տված՝ քնած են Սարոն ու Մոսին և աստղոտ երազներ են տեսնում ձիու վարգերի ու խրխինջների մեջ:

Աստղեր են կաթկթում ծործորալով, հովվակրակից կայծեր են թռչում, աշխարհը խաղաղ ու հանգիստ է, և Սարոն ու Մոսին երազում ձի են նստում: Իսկ ինչպես գիտեք՝ երազում ձի նստելը մուրազ է:



# Մ Ա Յ Ր Ը



*(Իրապատում)*

Մի հոգնած ծեր կին, գետնին հակված գնում էր, ձեռնափայտով բայլմակետեր դնելով հողի վրա: Սաթենիկ մայրիկն էր.

— Բարև՛, Սաթենի՛կ մայրիկ:

Դժվար է տեսնում: Ջանք է անում ճանաչել:

— Մեր գյուղի՞ց ես,— հարցնում է,— ասում են գյուղից դուրս հուշարձան են կառուցել...

— Այո՛, Սաթենի՛կ մայրիկ:

— Հա՞...

Դժվար է լսում Սաթենիկ մայրիկը:

— Ասում ես՝ կառուցե՞լ են...

Գլխով եմ անում: Ուրախանում է ու միաժամանակ աչքերից հոսում են արցունքները:

— Ասում են՝ հուշարձանը ծնկի եկած մի մայր է, ինձ պես՝ որդեկորույս... Գնում եմ հարցնեմ, թե նա՞ քանիսն է կորցրել... իմ հինգը գնաց, ոչ մեկը ետ չեկավ...

Ես ծանոթ եմ նրա հինգին իր տանը՝ պատերից նայող նկարներից:

— Սա իմ Շահենն է,— մեկիկ-մեկիկ ցույց է տվել ու պատմել նա,— սարի պես տղամարդ էր... Առաջինը Շահենին ճամփու դրի...

— Սա իմ Աշոտն է, հացի պատառը կիսում էր ընկերոջ հետ: Արշամս... լեկուս չորանա, միշտ կշտամբում էի. ծեծում էր փոքրիկ տղայիս՝ Վաղինակիս: Վաղինակս էլ չմնաց, գնաց... հերթով գնացին:

Դիմացի պատից նայում է թխաչ աղջիկը՝ Նորան:

— Քսան տարեկան էր,— երբ բաժանվեցինք: Շատ-շատ նամակներ էր գրում, մեկ էլ լռեց... Ահա այս նրա վերջին նամակն է... Գոնե չապրեց այս նամակի չափ...

Աղջիկն ընկել էր հաղթանակի արշալույսին:

— Ասում են՝ Ավանում զոհվածների հիշատակին հուշարձա՞ն են կառուցել: Որդեկորույս մի մայր է՝ ծունկի իջած... Գնամ, գնամ հարցնեմ, թե նա քանիսն է կորցրել...— կրկնում է Սաթենիկ մայրիկը:

— Ես գիտեմ, թե քանիսն է նա կորցրել, Սաթենիկ մայրիկ...

— Գիտե՞ս... քանի՞սը...

— Քանիսը որ գնացել է գյուղից ու ետ չի եկել:

Սաթենիկ մայրիկը նայում է ինձ, երկար ու մտածկոտ նայում է ինձ...

— Բոլորի անունները մեկ առ մեկ գրված է պատվանդանի վրա, Սաթենի՛կ մայրիկ...— շարունակում եմ ես,— քո հինգի անունն էլ է գրված:

Սաթենիկ մայրիկը արցունքը թափելով, շարունակում է ճամփան, ձեռնափայտով բայլմակետեր թողնելով հողին:

— Գնա՛մ... գնա՛մ, դարդ դարդի տանք...

ՅԱՇԱ ԲԱԲԱԼՅԱՆ

## «ՊԻՈՆԵՐ»

### ամսագրին նվիրված մատենագիտություն

Ամեն տարի Սովետական Միությունում լույս է տեսնում մոտ 75 հազար անուն գիրք, 4 հազար անուն ամսագիր և 9 հազար լրագիր:

Հարց է առաջանում, ինչպե՞ս օգտըվել այդ անընդգրկելի տպագիր խոսքից: Ինչպե՞ս կողմնորոշվել գրքերի աշխարհում: Այստեղ է, որ մեզ օգնության է հասնում մատենագիտությունը (բիբլիոգրաֆիան): Մատենագիտություն բառը, որ նշանակում է «մատյանների գիտություն» և հունարեն ծագում ունեցող բիբլիոգրաֆիան (Bibliographie), որը նշանակում է գիրք գրել, համարժեք բառեր են:

Մատենագիտության (բիբլիոգրաֆիայի) մեջ են մտնում տպագիր արտադրանքի բոլոր տեսակները՝ գրքեր, պարբերական հրատարակություններ, նոտաներ, աշխարհագրական քարտեզներ, կերպարվեստի ստեղծագործություններ և այլն:

Մատենագիտությունը գրանցում ու հաշվի է առնում տպագիր երկերը, դասակարգում ըստ գիտու-



# ՔԻՄԻԱՆ ՁՈ՞Ր ԱՌԱՐԿԱ Է

Ասում են, քիմիան չոր առարկա է: Բայց եկեք ներկա գտնվենք Արտաշատի շրջանի Դալար գյուղի միջնակարգ դպրոցի քիմիայի խմբակի պարապմունքին:

Ուսուցիչներ Էմմա Քոչարյանի և Օֆելյա Գևորգյանի նյութերից հետո տասներորդ դասարանցիներ Արմինե և Գայա Խաչատրյանները բեմ բարձրացան, ու այդ պահից սկսած՝ հրաշագործ քիմիան իշխում էր դահլիճում: Քիմիայի միջոցով նրանք պատմում էին ԲԱՄ-ի, «Բարեկամություն» գազամուղի, կոմերիտական հարվածային կառույցների մասին: Սերժիկ Հովհաննիսյանը բացատրեց, որ առանց քիմիական մի շարք բարդությունների ու միացությունների, Սիբիրի բնակլիմայական դժվարին պայմաններում գրեթե անհնար կլիներ նման խոշոր երկաթուղի անցկացնել, նոր հանքախորշեր հանձնել շահագործման, իսկ ամռանն էլ պաշտպանվել մոծակների պարսերի գրոհից:

Թամարայից, Էմմայից, Արևիկից, Սոնայից և մյուսներից հետո բեմ են բարձրանում շարժական ցուցահանդեսի կազմակերպիչները: Շարժական, որովհետև աշակերտները նախօրոք քիմիական խոշոր արդյունաբերական կենտրոններից նյութեր էին ձեռք բերել, գեղեցիկ ձևավորել փաթեթների վրա, իսկ բեմ բարձրանալուց հետո տալիս էին դրանց բացատրությունը:

Նախ պատմում են Երևանի Ս. Մ. Կիրովի անվան քիմկոմբինատի արտադրանքի՝ կաուչուկի մասին:

— 30-ական թվականներին կաուչուկի մեծ պահանջ ուներ երիտասարդ Սովետական Միությունը,— պատմում է Հերմինեն:— Սակայն որտեղի՞ց պիտի ստանային այն, երբ միայն Բրազիլիայում կաուչուկի հումք տվող ծառեր կային (բառացի թարգմանությամբ կաուչուկ նշանակում է ծառի արտասուք): Սովետական գիտնականներից Լեբեդևը քիմիական նյութերի օգնությամբ ստացավ կաուչուկ և 1934 թվականին Երևանի քիմկոմբինատը տվեց առաջին նմուշը:

Այսպես մեկը մյուսի ետևից պատանի քիմիագործները տալիս են Երևանի «Պոլիվինիլացետատ» գործարանի, Լենինականի տեքստիլ կոմբինատի, Արզնու բուժհամալիրի, Արտաշատի հախճապակու, կերամիկայի գործարանների արտադրանքների քիմիական բաղադրությունը, պատմում ժողովրդական տնտեսության մեջ դրանց ունեցած դերի և նշանակության մասին:

Անգնահատելի է քիմիայի դերը նաև գյուղատնտեսության մեջ:

Ահա բացվում է վարագույրը և բեմը ներկայացնում է մրգերի տոնավաճառ: Արարատյան դաշտավայրի բարիքների արտադրության և ընդհանրապես գյուղատնտեսության մեջ քիմիական նյութերի օգտագործման ուղղությամբ գիտելիքների խնկական սուտցաւտես: Լավ, բարձր բերք ստանալու համար պետք է չափավոր օգտվել քիմիայի հնարավորություններից, այլապես կարող է այն աղետ պատճառել: Իսկ ճիշտ չափը իմանալու համար անհրաժեշտ է լավ հասկանալ հողի պահանջները, հարուստ գիտելիքներ ձեռք բերել: Այս պայմանները կարևոր են բոլոր նրանց համար, ովքեր վճռել են կապվել հողի հետ, դառնալ նրա մշակն ու տերը:

Քիմիան անհրաժեշտ է նաև օդաչու դառնալ ցանկացողներին: Դա ոչ միայն սարքերում ու հարմարանքներում, ինքնաթիռաշինության մեջ կիրառվող մետաղների բաղադրությանն է վերաբերում: Արայիկ Մխիթարյանն իր պատրաստած ինքնաթիռի մանրանմուշի վրա բացատրեց, թե ինքնաթիռով ինչպես կարելի է պայքարել գյուղատնտեսական մթերքները, այգիներն ու բանջարանոցները, բուսականությունը փչացնող վնասատուների դեմ:

Դալարցի դպրոցականների՝ հումորով, երաժշտական ձևավորումով կազմակերպած երեկոն ուսանելի շատ բան տվեց ոչ միայն նրանց, ովքեր արդեն վճռել են իրենց ապագա մասնագիտությունը՝ քիմիագործությունը, այլև նրանց, ովքեր դեռևս երկմտանքի մեջ էին:

*ՎԱՀԱՆ ՄԽԻԱԿՅԱՆ*

թյան զանազան բնագավառների, տալիս երկի համառոտ բնութագիրը: Այսպիսով, մատենագիտությունը մեզ լայն հնարավորություն է տալիս հետևել լույս տեսնող գրականությանը և կողմնորոշվել նախկինում հրատարակվածների մեջ:

Խնկո-Ապոր անվան մանկական հանրապետական գրադարանը կազմել է «Պիոներ» ամսագրի մատենագիտությունը երեք պրակով: Լույս է տեսել առաջին պրակը, որն ընդգրկում է 1923-1955 թվականները: Պրակում նյութերը դասակարգված են ըստ թեմաների ու գիտության ճյուղերի: Հեղինակների անուններից ու վերնագրերից բացի, նյութերը ունեն համառոտ բնութագրումներ: Ասենք, մենք ցանկանում ենք իմանալ, թե «Պիոներ» ամսագիրը այդ տարիների ընթացքում ինչ նյութեր է տպագրել աստղագիտության վերաբերյալ: Պրակի մեջ գտնում ենք «Գիտահանրամատչելի նյութեր, գրույցներ» բաժնի «Աստղագիտություն» ենթաբաժինը և ընտրում մեզ հետաքրքրող նյութը: Օրինակ — «Բաղդալյան Հ.: Գիսավոր աստղեր: Հանրամատչելի զրույց (Նկ. Ա.Ն. Գասպարյան.— Պիոներ, 1951, № 5, էջ 29—30): Եվ այսպես, ցանկացած թեմայի մեզ հետաքրքրող նյութ, որ տպագրել է «Պիոներ» ամսագիրը, ճշտությամբ կարող ենք գտնել «Պիոներ ամսագրի մատենագիտություն» արժեքավոր այս գրքի օգնությամբ:

# ԻՄ ՀՈԳԵԶԱ-ՎԱԿՆԵՐԸ

*ՋԵՐԱԼԴ ԴԱՐՐԵԼ*





Ուղևորություններիս ժամանակ ինձ հաճախ է վիճակվել փոխարինել այս կամ այն գազանիկի մորը, և միշտ համոզվել եմ, որ դրա համար պետք է բավականին ամուր նյարդեր ունենալ:

Առաջին անգամ ես որդեգրել եմ չորս փոքրիկ ոզնու: Ոզնին հոգատար մայր է: Նա իր փոքրիկների համար պատրաստում է իսկական ստորգետնյա մսուր՝ բույն, ծածկված չոր տերևների հաստ շերտով: Այդտեղ էլ լույս աշխարհ են գալիս ոզնու կույր ու անօգնական ժառանգները: Փոքրիկները պատված են լինում սպիտակ և փափուկ, ռետինանման փշերի խիտ շերտով: Եվ երբ նորածիններն արդեն մի քանի շաբաթական են լինում, փշերն սկրսում են ամրանալ, դառնալ շագանակագույն:

Երբ փոքրիկները մի քիչ մեծանում են, մայրը նրանց դուրս է բերում բնից: Նրանք քայլում են մեկմեկու ետևից, և յուրաքանչյուրն ատամներով բռնում է առջևից ընթացողի պոչը: Իսկ առջևից գնացող ձագուկը կառչում է մոր պոչից: Եվ այդպես ճեմում են աղջամուղջով լուսավորված արահետներով՝ նմանվելով տարօրինակ, փշոտ հազարոտնուկի:

Գուցե մայր ոզնու համար ամենևին էլ դժվար չէր մեծացնել իր սերունդը, բայց երբ անսպասելիորեն ինձ նվիրեցին չորս կույր, սպիտակ, ռետինանման փշերով ծածկված ոզնիներ, ես շփոթվեցի:

Այդ ժամանակ մենք Հունաստանում էինք ապրում: Ոզնու՝ ֆուտբոլի գնդակի մեծության բույնը մեզ բերեց հարևան գյուղացին: Նա այն փորել-հանել էր դաշտում, աշխատանքի ժամանակ: Անհրաժեշտ էր փոքրիկներին անմիջապես կերակրել, բայց սովորական մանկական ծծակը չափազանց մեծ էր նրանց համար: Բարեբախտաբար, բարեկամիս աղջնակի մոտ տիկնիկի ծծակ գտնվեց:

Փոքրիկ ոզնիները վարժվեցին ծծակին և շուտով ուժի եկան:

Նրանք պատրաստ էին ուտել առավոտից իրիկուն՝ ցանկացած ժամին: Հենց որ դիպչում էի տուփին, տերևների միջից դուրս էին ցցվում սրածայր մռութիկները, համերաշխ նվվոց էր հնչում, և փոքրիկ ու սև քթիկներն սկսում էին այս ու այն կողմ պտտվել, փնտրելով կաթի շիշը:

Սովորաբար, փոքրիկները կշտանալով հանգստանում են, բայց, իմ կարծիքով, ոզնիներին դա չի վերաբերում: Նրանք ամեն անգամ այնպես էին նետվում դեպի շիշը, կարծես մի քանի շաբաթ սոված էին մնացել: Այժմ ես հասկանում եմ, որ այն ժամանակ չափից ավելի էի կերակրում նրանց, որովհետև նրանց պստլիկ ոտքերն արդեն չէին դիմանում մարմնի ծանրությանը: Ձագուկները հազիվ էին շարժվում գորգի վրայով՝ քաշ տալով հաստ փորիկները:

Սակայն նրանք բարեհաջող մեծանում էին: Ոտքերն ամրանում էին, աչքերը բացվում: Նրանք նույնիսկ համարձակվում էին դուրս գալ տուփից:

Ես շատ էի հպարտանում իմ փշոտ ընտանիքով և անհամբեր սպասում էի այն օրվան, երբ կկարողանայի նրանց անտառ առաջնորդել և հյուրասիրել այնպիսի անուշեղեններով, ինչպիսիք են խխունջներն ու մորին:

Բայց պատահեց այնպես, որ ստիպված եղա մի ամբողջ օր բացակայել:

Փոքրիկներին թողեցի քրոջս խնամքին: Մեկնելուց առաջ խնդրեցի՝ ոչ մի դեպքում նրանց մեկ շիշ կաթից ավելի չտալ, որքան էլ ճղճղան:

Բայց ես պետք է ավելի լավ ճանաչեի քրոջս: Երբ վերադարձա, նա ինձ դիմավորեց մեղավոր հայացքով:

Տանջվելով սոսկալի կանխազգացումից, ես նրան հարցրի, թե ամեն անգամ որքան կաթ է տվել նրանց: «Չորս շիշ յուրաքանչյուրին,— պատասխանեց նա,— տես, ինչպես են գիրացել»:

Դա հնարավոր չէր ժխտել: Նրանց պստլիկ փորերն այնպես էին փքվել, որ ոտքերը չէին հասնում գետնին: Նրանք նման էին ֆուտբոլի տարօրինակ փշոտ գնդակների, որոնց ինչ-որ մեկը սխալմամբ չորս ոտք և քիթ էր կպցրել:

Արեցի ինչ կարող էի, բայց մեկ օր անց բոլորն էլ սատկեցին աղիքային սուր բորբոքումից: Ամենից շատ վշտացած էր քույրս: Իմ սառը տեսքից, որով ընդունեցի նեղությունը, նա հասկացավ, որ այլևս երբեք իմ հոգեզավակներին նրան չեմ վստահի:

Իհարկե, ոչ բոլոր կենդանիներն են իրենց ձագուկներին խնամում նույնպիսի ջանասիրությամբ, ինչպես ոզնիները: Ոմանք առանձնապես նեղություն չեն տալիս իրենց:

Օրինակ, կենգուրուի նորածին ձագուկը հազիվ մի մատնաչափ է, իսկ հասուն կենգուրուն նույնիսկ ետևի ոտքերին նստելիս՝ մեկ մետր հասակ ունի: Նորածին կենգուրուն՝ այդ կույր ու մերկ գնդիկը, պետք է ինքնուրույն գտնի մոր փորը տանող ճամփան և կարողանա բարձրանալ նրա պայուսակը:

Դուք, իհարկե, հասկանում եք, որ այդ շատ դժվար է փոքրիկ կենգուրուի համար, որը հենց նոր է աշխարհ եկել: Չէ՞ որ նա կարող է օգտվել միայն առջևի թաթերից, որովհետև ետևիները դեռևս սեղմված են պոչին և անշարժ են:

Այնուհանդերձ, մայր կենգուրուն բոլորովին չի օգնում փոքրիկին:

Պստիկը պետք է ինքը սողա մոր փորի բրդի ջունգլիների միջով: Եվ նա ի վերջո հասնում է պայուսակին, սողոսկում նրա մեջ և տեղավորվում մոր կաթով լի կրծքի կողքին: Դա հերոսություն է, որի հետ չի կարող համեմատվել անգամ Էվերեստի հաղթահարումը:

Ինձ երբեք չի վիճակվել փոքրիկ կենգուրու խնամել, բայց բախտ եմ ունեցել գործ ունենալ նրա ցեղակցի՝ փոքրիկ ուոլաբիի հետ: Նա տեսքով շատ նման է կենգուրուին, միայն թե չափսերով շատ ավելի փոքր է:

Անկեղծ ասած, դա ամենագրավիչ գազանիկն է, որին ես երբևէ հանդիպել եմ:

Նա կույր էր, անմազ, վառ վարդագույն







Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ

մաշկով։ Փոքրիկը պատահաբար ընկել էր, խիստ վնասվել, և ես քիչ հույս ունեի, թե կապրի։

Չնայած դրան, նրան տուն տարա և տեղավորեցի ննջարանում։ Նա հաճույքով ուտում էր շշից, ավելի դժվար էր նրան տաք պահելը։ Ես նրան փաթաթեցի բրդյա գործվածքի մեջ, չորս կողմից շրջապատեցի տաք ջրով լի ջեռակներով, բայց դրանք շուտ էին սառչում, և ես շարունակ վախենում էի, թե նա կմրսի։ Պարզվեց, որ ավելի հեշտ է նրան տաքացնել մարմնիս ջերմությամբ, և նրան ծոցս դրեցի։ Եվ հասկացա, թե ինչ է քաշում մայր ուղյարին։ Փոքրիկն անդադար հոտոտում և լիզում էր ինձ, ժամանակ առ ժամանակ էլ բավականին սուր ճանկեր ունեցող ետևի թաթերով քացի-քացի տալիս։ Մի քանի ժամ հետո ես ինձ այնպես էի զգում, ասես մարզական մարտ էի անցկացրել ծանր քաշային բռնցքամարտիկի հետ։

Ես նրան տեղափոխեցի մեջքիս, բայց նա կրկին հայտնվեց կրծքիս վրա։

Գիշերը, նա ժամանակ առ ժամանակ այնպիսի ուժով էր քացահարում, որ դուրս էր թռչում անկողնուց, և ես ստիպված էի վեր կենալ ու նրան փնտրել հատակին։

Դժբախտաբար, նա երկու օր անց սատկեց, հավանաբար ներքին արյան զեղումից։ Ես շատ էի ցավում, որ չհաջողվեց փրկել նրան և այդպիսի անսովոր որդեգիր ունենալ։

Եթե կենգուրուն աչքի չի ընկնում ծնողական հոգատարությամբ, ապա թզուկ կապիկներն այդ առումով կարող են օրինակ հանդիսանալ։

Մկնիկի չափ, ծածկված զոլավոր կանաչ բրդով, պստլիկ մռութին պսպղացող խաժ աչքերով փոքրիկը նման է հեքիաթային թզուկի։

Երբ փոքրիկները լույս աշխարհ են գալիս, հայրը նրանց վերցնում է մորից և կրում իր կռնքերի վրա՝ երկու կողմից կախ ընկած խուրջինի նման։ Նա հետևում է փոքրիկների մաքրությանը, գիշերը՝ տաքացնում է իր գրկում և մորը հանձնում միայն կերակրելու ժամանակ։

Սովորաբար, այս փոքրիկներն անհավատալի անխելք են և միանգամից նրանց չես վարժեցնի շշից կերակրվելուն։ Իսկ երբ ձեր ջանքերը վերջապես հաջողությամբ են պսակվում, նրանք մեծանում են, և հարկ է լինում նրանց կրկին վարժեցնել՝ այս անգամ արդեն ափսեից ուտելուն։

Հավանաբար, նրանց կարծիքով, գլխավորը՝ մռութը կաթի մեջ ընկղմելն է, այնքան ժամանակ, քանի դեռ շունչը չի կտրվել կամ չեն խեղդվել կաթի մեջ։

Երկնագույն դեմքով այդ փոքրիկ կապիկը հեշտությամբ տեղավորվում է թեյի բաժակում։ Նրա մեջքն ու պոչը կանաչավուն են, փորն ու այտամորուսները վառ դեղին։ Վերին շրթունքի բանանաձև սպիտակ շերտը նման է պաշտոնաթող զինվորականի փառահեղ բեղերի։ Բոլոր ջահել կապիկների պես, նրա գլուխն էլ մարմնի համեմատ խիստ մեծ է, իսկ ոտքերն երկար են ու անճոռնի։

Հայտնվելով ինձ մոտ, նա հրաժարվում էր խմել շշից, համոզված, որ առաջարկածս ինչ-որ դիվային պատիժ է։ Սակայն մեկ անգամ փորձությանը դիմանալուց հետո, նրա խելքն սկսեց գնալ հենց միայն շշի տեսքից. նա կառչում էր ծծակին, թաթերով սեղմում շիշը և հրճվանքից թավալվում մեջքի վրա։

Իսկ երբ սկսեց խմել ափսեից, ուրիշ դժվարություն ծագեց։ Փոքրիկին դնում էին սեղանին, անմիջապես էլ հայտնվում էր կաթով լի ափսեն։ Ափսեն տեսնելուն պես, նա սուր ճչում էր ու սկսում ցնցվել ամբողջ մարմնով։ Դա, հավանաբար, հուզմունքի և ցասման յուրահատուկ արտահայտություն էր. հուզմունքի՝ որովհետև տեսել էր կաթը, ցասման՝ որովհետև իր կարծիքով շատ էր սպասել այդ վայրկյանին։ Նա ճղճղում էր և մորեխի պես թռչկոտում։

Եթե գլխի չէի ընկնում ամուր բռնել նրա պոչից, նա ցնծալից ճիչով գլխովին սուզվում էր ափսեի մեջ։ Մեր դեմքից սրբելով այդ կաթնային «փոթորկի» հետքերը, մենք նրան տեսնում էինք դատարկ ափսեի կենտրոնում, վրդովմունքի և ցասման դողի մեջ, որովհետև այլևս ոչինչ չէր մնացել խմելու։

Ամենադժվարին խնդիրը ձագուկներին գիշերը տաքացնելն է։ Որքան էլ տարօրինակ թվա, դա անհրաժեշտ է անգամ արևադարձային տաք կլիմայի պայմաններում, որովհետև արևամուտից հետո ջերմաստիճանն այնտեղ կտրուկ իջնում է։ Երբ ծնողները փոքրիկի մոտ են, նա թաղվում է մոր խիտ մորթու մեջ։

Ես շատ շուտ համոզվեցի, որ ջեռակներից քիչ օգուտ կա. արագ էին սառչում և ստիպված էի գիշերը մի քանի անգամ արթնանալ ու փոխել ջուրը։ Դա բավականին հոգնատանջ է հատկապես, եթե փոքրիկներից բացի ձեր խնամքին չափահաս կենդանիներ էլ ունեք։ Այդ պատճառով ամենահեշտ միջոցը՝ նրանց ձեր անկողնում պառկեցնելն է։ Շատ շուտով դուք վարժվում եք քնած ժամանակ շուռումուռ չգալ կողքից-կողք, որպեսզի չտրորեք այս կամ այն փոքրիկին։

Տարբեր ժամանակներ ինձ վիճակվել է անկողինս կիսել մեծ քանակությամբ բազմազան գազանների հետ։

Մի անգամ իմ դաշտային նեղ մահճակալն ապաստան էր դարձել միաժամանակ երեք մանգուստի, երկու փոքր կապիկի, սկյուռի և մեկ երիտասարդ շիմպանզեի։

Բայց չհուսաք, թե ձեր սաները մազաչափ իսկ երախտագիտություն կտածեն ձեր նկատմամբ, ավելի հաճախ պատահում է հակառակը։

Ամենախոր սպիներից մեկը մարմնիս վրա հայտնվեց այն բանից հետո, երբ ես կաթով լի շիշը փոքրիկ մանգուստներից մեկին հրամցրի հինգ րոպե ավելի ուշ, քան նա ուզում էր։ Երբ հետաքրքրվում են իմ այդ սպիով, պատասխանում եմ, որ հիշատակ է մնացել յագուարից։ Ո՞վ կհավատա, որ այդ սպին թողել է փոքրիկ մանգուստը, որին պահում էի անկողնումս, վերմակի տակ։



# «Հասակակիցներ»

Հայր ու որդի վազում են դեպի կովողները:

— Մենք Օլիվերի՝ կողմից ենք կովելու, պա՛,— հարցնում է Ջոդին:

— Մենք կովելու ենք նրա կողմից, ում ծեծում են...— պատասխանում է հայրը:

«Հասակակիցներ» վիպակում դու համախ միասին կտեսնես Ջոդիին ու նրա հորը՝ Պեննի Բեքսթերին: Նրանք միասին մասնակցում են տղամարդկանց՝ հանուն արդարության: Միասին որսում են ծեր ու խորամանկ Մոթմոթանին՝ արջին: Միասին գետափի թփուտների մեջ թաքնված, շունչները պահած դիտում են բնության հրաշքներից մեկը՝ կռունկների պարը: Հայր ու որդի համակացողությունը մի փոքր խորթ է Ֆլորիդայի թավ անտառներում ապրող հայր ու որդի Բեքսթերների համար: Նրանք ուղղակի մտերիմ ընկերներ են: Չնայած դրան, Ջոդին երբեմն իրեն մենակ է զգում, շատ է ուզում, որ իր հասակակից մեկը լինի կողքին: Բայց քանի որ նրա միակ հասակակիցը՝ Հարդաթեը մի քանի կիլոմետր հեռու է ապրում, Ջոդին սկսում է ընկերություն անել... եղնիկի ձագի հետ:




Գրքում քեզ կհիացնի Ֆլորիդայի անտառների գեղեցկությունը: Բայց այդ հրաշալի անտառներում էլ մարդ պետք է զգույշ ու պինված լինի, որովհետև վտանգը քթի տակ է: Մի անգամ թռծռավոր օձն է վայրի տակից հարձակվում, մի ուրիշ անգամ գայլերի ոհմակն է մտնում գոմ, մի ուրիշ անգամ... Մարդկանց ու կենդանիների կյանքը այդ անտառներում գոյության պայքար է: Այդ պայքարին չի դիմանում երազանքներով տարված Հարդաթեը: Այդ պայքարին զոհ են գնում Ջոդիի սիրելի ընկերը՝ եղնիկի ձագ Դրոշակը և բազմաթիվ կենդանիներ, որոնց վրա հարձակվում է անտեսանելի թշնամին՝ ժանտախտը: Գոյության պայքարը Ջոդիին էլ է մեծ փորձության ենթարկում: Դրոշակի մահից հետո նա լքում է ծնողներին, բայց մի քանի օր անց՝ վերադառնում:

— Դու տեսար, թե ինչպիսին է մեծերի աշխարհը,— ասում է հայրը,— մոտիկից ծանոթացար Պառավ Քաղցի հետ... Կյանքը անչափ գեղեցիկ է, բայց ոչ հեշտ...

— Ես ամաչում եմ, որ փախել եմ,— ասում է Ջոդին...

Այս վիպակը, որը կօգնի քեզ ճանաչելու բնությունը, կսովորեցնի սիրել կենդանիներին ու լինել ազնիվ, գրել է ամերիկացի կին գրող Մարջորի Քինան Ռոլինգսը: «Հասակակիցներ» վիպակը ԱՄՆ-ում արժանացել է Պուլիտցերի անվան մրցանակի: Վիպակը բարձր է գնահատել նաև մեծ գրող Էռնեստ Հեմինգուեյը: 1978 թ. վերջերին «Հասակակիցներ» վիպակը լույս տեսավ հայերեն թարգմանությամբ:

Մ. ՌՍԿԱՆՅԱՆ

Մի շատ գեր մարդ հանդիպում է մի նիհարի:

— Ձեզ նայելով,— ասում է նա,— մարդ ակամայից կարծում է, թե այստեղ սով է:

— Իսկ ձեզ նայելիս,— պատասխանում է նիհարը,— մարդ կարծում է, թե դուք եք այդ սովի պատճառը:

Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ



ԺՊԻՏՆԵՐ



— Արմեն, ես քեզ արգելում եմ խաղալ Կարենի հետ: Նա շատ վատ տղա է:

— Իսկ ես լա՞վն եմ, մայրի՛կ:

— Իհարկե, տղա՛ս, դու շատ լավն ես:

— Այդ դեպքում Կարենին թույլ տուր, որ խաղա ինձ հետ:

Ա. ՍԱՐԳՍՅԱՆ



# Լոբու հատիկները շոգենավը երկու մասի բաժանեցին

Այս վերնագիրը կարող է անհեթեթություն թվալ: Ինչպե՞ս կարող են լոբու հատիկները մեջտեղից կիսել պողպատյա հսկա շոգենավը: Մյունխհաուզենյան հորինվածք չի՞ արդյոք:

Պարզվում է, որ ոչ, իրոք այդպիսի դեպք եղել է:

1932 թվականի սեպտեմբերին սովետական «Խարկով» շոգենավը վերադառնում էր Հունաստանից: Նավամբարները լիքը լցված էին լոբու հատիկներով: Ստամբուլի մոտ նավը անսպասելիորեն նստեց քարքարոտ ծանծաղուտում: Նավի անձնակազմի հնարամտության շնորհիվ հաջողվեց փրկել շոգենավը: Ամեն ինչ բարեհաջող կվերջանար, եթե չլինեին չարաբաստիկ լոբիները:

Երբ շոգենավը նստել էր ծանծաղուտում, նրա հատակը վնասվել էր, և ջուրը դանդաղորեն լցվել էր նավամբարները, որոնք, ինչպես ասացինք, բերնեբերան լցված էին լոբու հատիկներով: Գիտեք, որ բույսի սերմերը խոնավ միջավայրում մեծ քանակությամբ խոնավություն են կլանում և ուռչելով մեծանում: Եվ ահա լոբիները ուռչելով աստիճանաբար սկսեցին ճնշում գործադրել նավի ներսից: Իսկ այդ ճնշումը բավականին մեծ ուժ է ներկայացնում իրենից. մեկ քառակուսի սանտիմետրի վրա այն կարող է հասնել մինչև 30 կիլոգրամի:



Բանից անտեղյակ անձնակազմը շոգենավը դեպի Օդեսա էր վարում, երբ խլացուցիչ ճարճատյունով նավը կիսվեց միջին մասից: Նրա քթամասը առանձնացավ վերջնամասից: Աղետի ազդանշանի վայրը ժամանած բուքսիրային նավը-Սևաստոպոլ հասցրեց նավի քթամասը: Որոշ ժամանակից հետո նավահանգիստ հասցվեց նաև մնացած նավի վերջնամասը:

Դրանցից հետո նավաստիները երկար ժամանակ կատակում էին. «Խարկովը» աշխարհի ամենաերկար նավն է: Նրա քթամասը գտնվում է Սևաստոպոլում, իսկ վերջնամասը՝ Ստամբուլում»:

Իհարկե, շոգենավը կարճ ժամանակից հետո վերանորոգվեց և նորից շարք մտավ:

Ահա թե ինչպիսի ավերածություն կարող են պատճառել միանգամայն անմեղ լոբու հատիկները:

ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
Կենսաբանության դոկտոր, պրոֆեսոր

Լույս է տեսնում 1928 թվականից



ՊԻՈՆԵՐ 6. 1979 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ



Շապիկի առաջին էջը՝ ԱՐՄԵՆՈՒՀԻ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԻ
Հ. Կոչոյանի անվ. դպրոց, 4-րդ դասարան

Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝

ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատ. քարտուղար), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ Գր., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՊԵՏՐՈՍՅԱՆ Թ., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր):

«Пионер» на армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, №15.

Հասցեն՝ 375015, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15: Հեռախոսներ՝ 56—82—72, 58—08—58, 56—14—96:

ՎՖ 03632: Պատվեր 865: Տպաքանակ 52300: Տպ. 3 մամ.:
Հանձնված է արտադրության 3 IV 1979 թ.:
Ստորագրված է տպագրության 28 V 1979 թ.:

ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան—9, Տերյան փ. № 91:

## ԾՐԱՐԻ ՄԵՋ՝ ՋՈՒՐ ՈՒ ԿՐԱԿ

*ՎԱՂԻՆԱԿ ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ*

Գիշերն իջավ
Ցուրտ ու խավար,
Ինչպես մի սև
Փակված ծրար:

Մերթ անձրևն է
Առատ թափվում,
Մերթ շանթերն են
Փայլատակում:

Ծրարի մեջ՝
Ջուր ու կրակ,
Քամին բացեց
Ծրարը փակ:

Նկ. ԿԱՐԵՆ ՍԱՐԳՍՅԱՆԻ

## ԸՆՏԱՆԻՔԻ, ՆԱԵՎ ԲՈԼՈՐԻ ՀԱՄԱՐ



Գիտհիլդ Բուխհայմի մտքով չէր անցնում, որ ինք կարող է արվեստի գործեր ստեղծել: Ճիշտ է, իր ժամանակին նա գեղանկարչության մեջ որոշ փորձեր արել էր, սակայն հեղինակավոր մարդիկ համոզել էին, որ այդ ասպարեզում նա ոչ մի բանի պիտանի չէ: Այդ ժամանակ նա սկսել էր տերևներից ու ծամոնից զվարճալի գազանիկներ ու թռչուններ սոսնձել փոքրիկ որդու համար:

Տղան վաղուց մեծացել է, իսկ մայրիկը շարունակում է չարչարվել նոր գազանիկներ ստեղծելու վրա:

Կենդանիների առավել աչքի ընկնող նմուշները, որոնք տերևներից պատրաստել է տիկին Բուխհայմը, վերջերս առանձին գրքով լույս են տեսել ԳՖՀ-ում: Արդարության դեմ չմեղանչելու համար նշենք, որ գիրքը հրատարակել է տիկին Բուխհայմի ամուսնուն պատկանող հրատարակչությունը: